Խմբագրության հասցեն՝
375023, Երևան—23, Օրջոնիկիձեի պողոտա, № 2

ՀԵՌԱԽՈՍՆԵՐ՝

գլխավոր խմբագիր՝ 52—89—93
գլխավոր խմբագրի տեղակալ՝ 53-86-11
պատասխանատու քարտուղար՝ 52—99—22
պատասխանատու քարտուղարի տեղակալ՝ 56—59—93

**Բաժիններ**

մարքս-լենինյան տեսության պրոպագանդայի՝ 52—05—58
կուսակցական կյանք՝ 52—25—43
սոցիալ-տնտեսական պրոբլեմների՝ 52—57—56
գիտության և կուլտուրայի՝ 52—99—34
գրական աշխատողներ՝ 52—66—77
53—59—94
թողարկիչ, սրբագրիչ՝ 53—86—11





ՍԻՄՈՆՅԱՆ Ա. Ս.
(գլխավոր խմբագիր)
ԱՍԱՏՐՅԱՆ Գ. Ե.
ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆ Լ. Բ.
(գլխավոր խմբագրի տեղակալ)
ԽՈՋԱԲԵԿՅԱՆ Վ. Ե.
ԿԱՐԱՊԵՏՅԱՆ Լ. Մ.
ԿԱՐԱՊԵՏՅԱՆ Ռ. Բ.
(պատասխանատու քարտուղար)
ՀՈՎՍԵՓՅԱՆ Ս. Գ.
ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ Գ. Բ.
ՄԱՆԴԱԼՅԱՆ Ք. Լ.
ՄԵԼԻՔՅԱՆ Մ. Ա.
ՄԻՔԱՅԵԼՅԱՆ Մ. Դ.
ՍԱՔԱՆՅԱՆ Ս. Մ.
ՍԻՄՈՆՅԱՆ Հ. Ռ.
ՍԻՄՈՆՅԱՆ Ս. Ա.
ՖԱՆԱՐՋՅԱՆ Վ. Բ.






# ՏՆՏԵՍԱԿԱՆ ՄԵԽԱՆԻԶՄԻ ՎԵՐԱԿԱՌՈՒՑՄԱՆ ՈՒՂԻՈՎ

**ՍՄԿԿ Կենտկոմի 1987 թ. հունիսյան պլենումի որոշումներին համապատասխան՝ 1988 թվականի հունվարից հանրապետության ժողովրդական տնտեսության ճյուղերի ձեռնարկություններն ու կազմակերպությունները փոխադրվում են լրիվ տնտհաշվարկի և ինքնաֆինանսավորման:**
**Հանրապետության էկոնոմիկայի տնտեսական մեխանիզմի վերակառուցման կապակցությամբ խմբագրությունը հարցերով դիմեց Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի նախագահի տեղակալ ՅՈՒ. Ե. ԽՈՋԱՄԻՐՅԱՆԻՆ:**

— Ո՞րն են ինքնաֆինանսավորման, ինքնածախսածածկման և լրիվ տնտհաշվարկի վրա հիմնված տնտեսավարման նոր համակարգի էությունն ու հիմնական պահանջները:

*— Վերակառուցման ընթացքում կուսակցության տնտեսական ստրատեգիայի խնդիրներն ու նպատակները սահմանված են ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թ. ապրիլյան պլենումի և կուսակցության XXVII համագումարի կողմից:*
*ՍՄԿԿ Կենտկոմի 1987 թ. հունիսյան պլենումն ավարտեց էկոնոմիկայի բնագավառում կուսակցության հիմնական խնդրի՝ արմատական ռեֆորմի, տնտեսական մեխանիզմի որակական փոփոխությունների, կառավարման ամբողջական, արդյունավետ և ճկուն համակարգի մշակումը: Հիրավի, իրականացվող հեղափոխական վերափոխումների նպատակը սովետական էկոնոմիկան որակապես նոր մակարդակի բարձրացնելն է:*
*Ինչպես նշվեց Կենտրոնական կոմիտեի հունիսյան պլենումում, սոցիալիզմի տեսության և պրակտիկայի գլխավոր խնդիրն է՝ սոցիալիստական հիմքի վրա ստեղծել տնտեսական, գիտատեխնիկական և սոցիալական առաջադիմության՝ կապիտալիզմի համեմատությամբ առավել հզոր խթաններ, ավելի արդյունավետորեն միացնել պլանային ղեկավարումը անհատի և կոլեկտիվի շահերի հետ:*
*Այդ կապակցությամբ լայն հնարավորություններ է ընձեռում ապրանքադրամական հարաբերությունների առավել լրիվ օգտագործումը, ձեռնարկությունների փոխադրումը լրիվ տնտհաշվարկի և ինքնաֆինանսավորման: Ինչպես հայտնի է, պետական ձեռնարկության մասին օրենքը ուժի մեջ է մտնում 1988 թ. հունվարի 1-ից, և արտադրական կոլեկտիվների կյանքում սկսվում է սկզբունքային նոր փուլ:*
*ՍՍՀՄ սահմանադրությանը համապատասխան, այդ օրենքը սահմանում է սոցիալիստական ձեռնարկության (միավորման) տնտեսական գործունեության իրավական և տնտեսագիտական հիմունքները, ամրապնդում պետական (համաժողովրդական) սեփականությունն արդյունաբերության մեջ, շինարարությունում, ագրոարդյունաբերական համալիրում և մյուս ճյուղերում, ընդլայնում է այդ սեփականության արդյունավետ օգտագործմանը, ձեռնարկության կառավարմանը, պետական և հասարակական գործերին աշխատավորական կոլեկտիվների մասնակցության հնարավորությունները:*

ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԹԵՄԱՆԵՐ



ԳԱՂԱՓԱՐԱԽՈՍԱԿԱՆ ՊԱՅՔԱՐԻ ՃԱԿԱՏՆԵՐՈՒՄ



ԳԻՏՈՒԹՅՈՒՆ: ՄՇԱԿՈՒՅԹ: ԿՐԹՈՒԹՅՈՒՆ



ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ԷՋԵՐԻՑ



ԺԱՄԱՆԱԿ: ԱՐԱԳԱՑՈՒՄ: ՄԱՐԴ



ՍԻՄՈՆՅԱՆ Ա. Ս.
(գլխավոր խմբագիր)
ԱՍԱՏՐՅԱՆ Գ. Ե.
ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆ Լ. Բ.
(գլխավոր խմբագրի տեղակալ)
ԽՈՋԱԲԵԿՅԱՆ Վ. Ե.
ԿԱՐԱՊԵՏՅԱՆ Լ. Մ.
ԿԱՐԱՊԵՏՅԱՆ Ռ. Բ.
(պատասխանատու քարտուղար)
ՀՈՎՍԵՓՅԱՆ Ս. Գ.
ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ Գ. Բ.
ՄԱՆԴԱԼՅԱՆ Ք. Լ.
ՄԵԼԻՔՅԱՆ Մ. Ա.
ՄԻՔԱՅԵԼՅԱՆ Մ. Դ.
ՍԱՔԱՆՅԱՆ Ա. Մ.
ՍԻՄՈՆՅԱՆ Հ. Ռ.
ՍԻՄՈՆՅԱՆ Ս. Ա.
ՖԱՆԱՐՋՅԱՆ Վ. Բ.

Խմբագրության հասցեն՝
*375023, Երևան—23, Օրջոնիկիձեի պողոտա, № 2*

ՀԵՌԱԽՈՍՆԵՐ՝

գլխավոր խմբագիր՝ 52—89—93
գլխավոր խմբագրի տեղակալ՝ 53-86-11
պատասխանատու քարտուղար՝ 52—99—22
պատասխանատու քարտուղարի տեղակալ՝ 56—59—93

**Բաժիններ**

մարքս-լենինյան տեսության պրոպագանդայի՝ 52—05—58
կուսակցական կյանք՝ 52—25—43
սոցիալ-տնտեսական պրոբլեմների՝ 52—57—56
գիտության և կուլտուրայի՝ 52—99—34
գրական աշխատողներ՝ 52—66—77
53—59—94
թղթակից, սրբագրիչ՝ 53—86—11







# ՏՆՏԵՍԱԿԱՆ ՄԵԽԱՆԻԶՄԻ ՎԵՐԱԿԱՌՈՒՑՄԱՆ ՈՒՂԻՈՎ

**ՍՄԿԿ Կենտկոմի 1987 թ. հունիսյան պլենումի որոշումներին համապատասխան՝ 1988 թվականի հունվարից հանրապետության ժողովրդական տնտեսության ճյուղերի ձեռնարկություններն ու կազմակերպությունները փոխադրվում են լրիվ տնտհաշվարկի և ինքնաֆինանսավորման:**

**Հանրապետության էկոնոմիկայի տնտեսական մեխանիզմի վերակառուցման կապակցությամբ խմբագրությունը հարցերով դիմեց Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի նախագահի տեղակալ ՅՈՒ. Ե. ԽՈՋԱՄԻՐՅԱՆԻՆ:**

— Որո՞նք են ինքնաֆինանսավորման, ինքնածախսածածկման և լրիվ տնտհաշվարկի վրա հիմնված տնտեսավարման նոր համակարգի էությունն ու հիմնական պահանջները:

*— Վերակառուցման ընթացքում կուսակցության տնտեսական ստրատեգիայի խնդիրներն ու նպատակները սահմանված են ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թ. ապրիլյան պլենումի և կուսակցության XXVII համագումարի կողմից:*

*ՍՄԿԿ Կենտկոմի 1987 թ. հունիսյան պլենումն ավարտեց էկոնոմիկայի բնագավառում կուսակցության հիմնական խնդրի՝ արմատական ռեֆորմի, տնտեսական մեխանիզմի որակական փոփոխությունների, կառավարման ամբողջական, արդյունավետ և ճկուն համակարգի մշակումը: Հիրավի, իրականացվող հեղափոխական վերափոխումների նպատակը սովետական էկոնոմիկան որակապես նոր մակարդակի բարձրացնելն է:*

*Ինչպես նշվեց Կենտրոնական կոմիտեի հունիսյան պլենումում, սոցիալիզմի տեսության և պրակտիկայի գլխավոր խնդիրն է՝ սոցիալիստական հիմքի վրա ստեղծել տնտեսական, գիտատեխնիկական և սոցիալական առաջադիմության՝ կապիտալիզմի համեմատությամբ առավել հզոր խթաններ, ավելի արդյունավետորեն միացնել պլանային ղեկավարումը անհատի և կոլեկտիվի շահերի հետ:*

*Այդ կապակցությամբ լայն հնարավորություններ է ընձեռում ապրանքադրամական հարաբերությունների առավել լրիվ օգտագործումը, ձեռնարկությունների փոխադրումը լրիվ տնտհաշվարկի և ինքնաֆինանսավորման: Ինչպես հայտնի է, պետական ձեռնարկության մասին օրենքը ուժի մեջ է մտնում 1988 թ. հունվարի 1-ից, և արտադրական կոլեկտիվների կյանքում սկսվում է սկզբունքային նոր փուլ:*

*ՍՍՀՄ սահմանադրությանը համապատասխան, այդ օրենքը սահմանում է սոցիալիստական ձեռնարկության (միավորման) տնտեսական գործունեության իրավական և տնտեսագիտական հիմունքները, ամրապնդում պետական (համաժողովրդական) սեփականությունն արդյունաբերության մեջ, շինարարությունում, ագրոարդյունաբերական համալիրում և մյուս ճյուղերում, ընդլայնում է այդ սեփականության արդյունավետ օգտագործմանը, ձեռնարկության կառավարմանը, պետական և հասարակական գործերին աշխատավորական կոլեկտիվների մասնակցության հնարավորությունները:*

Ինչպես նշեց ընկեր Մ. Ս. Գորբաչովը մեծ Հոկտեմբերի 70-ամյակին նվիրված հանդիսավոր նիստում, «Երկրում սկսված արմատական տնտեսական ռեֆորմի նպատակն է մոտակա երկու-երեք տարում ապահովել անցումը կառավարման չափազանց կենտրոնացված, հրահանգչական համակարգից դեմոկրատական, առավելապես տնտեսագիտական մեթոդների, ցենտրալիզմի ու ինքնակառավարման լավագույն զուգորդման վրա հիմնված համակարգի»։ Բնական է, որ այդ գործում մեծ և պատասխանատու խնդիրներ են ծառացած մեր հանրապետության բոլոր մակարդակների կուսակցական ու սովետական մարմինների, ձեռնարկությունների, մինիստրությունների ղեկավարների և կոլեկտիվների առջև։

Տնտեսավարման նոր եղանակները, անցումը ժողովրդական տնտեսության կառավարման տնտեսագիտական մեթոդներին ընդգրկում են գործունեության փոխկապակցված մի ամբողջ համակարգ, որի տարրերից յուրաքանչյուրը էական դեր է խաղում առաջադրված խնդիրների լուծման գործում։

Իսկ այդ խնդիրները բարդ են ու բազմազան. պլանավորման վերակառուցում, նոր մոտեցում տերիտորիալ կառավարմանը, գնագոյացման արմատական ռեֆորմ, աշխատանքի արտադրողականության աճի արագացում, մատակարարման, ֆինանսական մեխանիզմի և բանկերի համակարգերի վերակառուցում, նյութական արտադրության ոլորտի մինիստրությունների ու գերատեսչությունների դերի ու ֆունկցիաների փոփոխություն, գիտատեխնիկական առաջադիմության կառավարման կատարելագործում, վիճակագրության գործի արմատական բարելավում։ Տնտեսական մեխանիզմի վերակառուցման համար բացառիկ կարևորություն ունեցող այս բոլոր հարցերի վերաբերյալ ընդունվել են ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ինչպես նաև ՀԿԿ Կենտկոմի և ՀՍՍՀ Մինիստրների խորհրդի համապատասխան որոշումներ։ Ելակետային իրավական բազա է ստեղծված արդյունաբերությունը և ամբողջ ժողովրդական տնտեսությունը տնտեսավարման նոր մեթոդների փոխադրելու համար՝ սկսած հեռանկարային պլանավորումից, վերջացրած ձեռնարկությունների ու կառավարման տարբեր մարմինների անմիջական գործունեությամբ։

Այդպիսի անցմանը նախորդեց պլանավորման և տնտեսական գործունեության ասպարեզում ձեռնարկությունների իրավունքների ընդլայնման ու աշխատանքի վերջնական արդյունքների համար նրանց պատասխանատվության բարձրացման ուղղությամբ տնտեսափորձի անցկացումը, որը ցույց տվեց իր կենսունակությունը և բացահայտեց արտադրության արդյունավետության աճի մեծ հնարավորությունները։

1987 թ. հունվարից տնտեսավարման նոր պայմաններում են աշխատում հանրապետության ամբողջ արդյունաբերությունը՝ ներառյալ պետագրոարդի վերամշակող ճյուղերը, ինչպես նաև կապի, կենցաղային սպասարկման, ավտոտրանսպորտի ձեռնարկությունները, հրատպետկոմը։

1987 թ. հուլիսից կառավարման տնտեսական մեթոդների անցան պետական առևտրի և սպառողական կոոպերացիայի ձեռնարկություններն ու կազմակերպությունները։

1987 թվականից կառավարման և տնտեսավարման տնտեսական մեթոդների զարգացման նոր փուլ սկսվեց։ Սումիի մեքենաշինական գործարանի և ՎԱԶ-ի օրինակով անցյալ տարի հանրապետությունում տնտեսավարման առավել բարձր աստիճանի անցան նավթաքիմիական, ավտոմոբիլային արդյունաբերության, քիմիական մեքենաշինության, սարքաշինության և թեթև արդյունաբերության ձեռնարկությունները։ Դրանց բաժին է ընկնում հանրապետության արդյունաբերության ապրանքային արտադրանքի 28 տոկոսը, ըստ մատակարարումների արտադրանքի իրացման՝ 34, ժողովրդական սպառման ապրանքների՝ 46, աշխատավարձի ֆոնդի՝ 29 և շահույթների 23 տոկոսը։

Կառավարման տնտեսական մեթոդների, լրիվ տնտհաշվարկի և ինքնաֆինանսավորման կիրառումը, պետական արտադրական ձեռնարկության մասին օրենքի հիման վրա դեմոկրատական հիմունքների ընդլայնումն ու ինքնակառավարման զարգացումը, հիրավի, հեղափոխական քայլեր են ոչ միայն էկոնոմիկայի, այլև մեր ամբողջ սոցիալիստական հասարակարգի զարգացման ճանապարհին։



**— Որո՞նք են լրիվ տնտեսական հաշվարկի և ինքնաֆինանսավորման անցնելու առանձնահատկությունները մեր հանրապետությունում։**

— Լրիվ տնտհաշվարկի սկզբունքային, որակական էությունը ինքնածախսածածկումն է ու ինքնաֆինանսավորումը։ Եթե ինքնածախսածածկման նպատակը ընթացիկ ծախսերի լրիվ հատուցումն է ձեռնարկության կոլեկտիվի վաստակած միջոցների հաշվին, ապա ինքնաֆինանսավորման խնդիրն առավել բարդ է։ Այն կոչված է հասնելու շահութաբերության այնպիսի մակարդակի, որպեսզի արտադրության ընդլայնման, վերակառուցման և արդիականացման, նոր տեխնիկայով հագեցման, շրջանառու միջոցների համալրման, սոցկուլտկենցաղային օբյեկտների շինարարության համար ապահովվի սեփական միջոցների կուտակումը՝ չդիմելով պետության անհատույց օգնությանը կամ վարկերին։

Հարկ է խոստովանել, որ լրիվ տնտհաշվարկով աշխատելու համար անպատրաստ լինելը առավել սրությամբ դրսևորվեց հանրապետության 28 ձեռնարկություններում պետընդունում մտցնելուց հետո։ 1987 թ. հունվարից նոր տնտեսակարգի անցած 60 ձեռնարկությունների ու միավորումների գործունեության արդյունքներն ամենևին էլ միանշանակ չեն իրենց իսկ աշխատանքի արդյունքների նկատմամբ՝ մինչև նոր մեթոդների կիրառումը, ինչպես նաև որոշ արագացման, այդ ցուցանիշները նկատելիորեն ցածր են ինքնաֆինանսավորման։ Չնայած արտադրության ծավալի և արտադրողականության աճի որոշ արագացման, այդ ցուցանիշները նկատելիորեն ցածր են ինքնաֆինանսավորման չանցած ձեռնարկությունների մակարդակից։

Ընթացիկ տարվա 9 ամսվա տվյալներով, ձեռնարկությունների առաջին խումբը զիջում է երկրորդին ըստ արտադրության ծավալի՝ 1,3 տոկոսային կետով, աշխատանքի արտադրողականության՝ 1,9 կետով, մինչդեռ գերազանցում է ըստ մատակարարումների արտադրանքի իրացման ծավալով՝ 0,7 կետով։

Նոր տնտեսակարգի անցած ձեռնարկությունները շահույթի պլանները թերակատարել են 17 կետով կամ 36,1 մլն ռուբլով։ Ընդ որում այդ ցուցանիշի կատարումը չի ապահովել 22 ձեռնարկություն (ընդհանուր քանակի 36 տոկոսը)։ 11 ձեռնարկություն (18 տոկոսը) թույլ է տվել ինքնարժեքի գերածախս, որում հատկապես մեծ բաժին ունեն «Էլեկտրասարք», «Հայավտո», «Ավտոմատիկա» միավորումները։ Թեթև արդյունաբերության համակարգում գերածախս է թույլ տվել 5 ձեռնարկություն՝ 6,2 մլն ռուբլի գումարով։

Տնտեսական գործունեության գլխավոր ցուցանիշի՝ պայմանագրային պարտավորությունների հիման վրա մատակարարումները և պլան-կարգադրերը թեթև արդյունաբերության մինիստրությունը կատարել է 98 տոկոսով կամ սպառողներին պակաս է տրվել 36,8 մլն ռուբլու արտադրանք։ Թեթև արդյունաբերության յուրաքանչյուր հինգերորդ ձեռնարկություն թերակատարել է սահմանված առաջադրանքները։

Մեծ չափերի են հասնում արտադրանքի մատակարարումների թերակատարումները Երևանի «Գարուն» (3,8 մլն ռուբլի), Ալավերդու կարի (6,4 մլն ռուբլի), Լենինականի Չկալովի անվան կարի (2,6 մլն ռուբլի) միավորումներում։

Այս փաստերը վկայում են այն մասին, որ առանց պատշաճ նախապատրաստության՝ լրիվ տնտհաշվարկի և ինքնաֆինանսավորման անցնելը հանգեցնում է ֆինանսական ծանր դրության, ինչպիսին այժմ տիրում է թեթև արդյունաբերության մի շարք ձեռնարկություններում։ Այսպես, Կիրովականի տրիկոտաժի, Լենինականի կարի միավորումները, «Մասիս» ֆիրման այս տարի արդեն վճարել են միլիոնավոր ռուբլիների տուգանքներ։

Ինքնաֆինանսավորման պայմաններում աշխատող միութենական ենթակայության ձեռնարկություններից առավել մեծ չափերի տուգանային պատժներ են կիրառվել «Էլեկտրասարք» և «Հայավտո» միավորումների, Երևանի ավտոդողերի և ոսկերչական գործարանների նկատմամբ։

Տուգանքի պատճառների վերլուծությունը ցույց է տալիս, որ դրանց մեծ

մասը պայմանագրային պարտավորությունների խախտումների հետևանք են։ Այսպիսով, ակներև է, որ լրիվ տնտհաշվարկի ու ինքնաֆինանսավորման անցնելը բարդ խնդիր է և պահանջում է ամենախոր տնտեսագիտական վերլուծություն, արտադրության բոլոր օղակների մանրակրկիտ նախապատրաստություն, մշտական տքնաջան աշխատանք մատակարարների հետ, պայմանագրերով ստանձնած պարտավորությունների խստիվ պահպանում, կազմակերպական ու տնտեսագիտական մեծ աշխատանք, կոլեկտիվների, կուսակցական և հասարակական կազմակերպությունների ուժերի համախմբում։

Մինչդեռ կոնկրետ փաստերը վկայում են, որ այդ առումով հանրապետության արդյունաբերության մեջ դեռևս առկա են էական թերություններ և չլուծված հարցեր, որոնց վրա սրեց մեր ուշադրությունը ՀԿԿ Կենտկոմի 1987 թ. հուլիսյան պլենումը։

Չնայած կիրառված միջոցներին, 1987 թվականի սեպտեմբերի 1-ի դրությամբ, շատ ձեռնարկություններում շարունակում են կուտակել ապրանքանյութական գերնորմատիվային մնացուկներ։ «Պոլիվինիլացետատ» արտադրամիավորումում այդ արժեքների գումարը հասնում է երկու և կես միլիոն ռուբլու, նույնքան էլ ալյումինի գործարանում, Չարենցավանի հաստոցաշինական արտադրամիավորումում՝ 6,4 մլն ռուբլու, Լենինականի «Էլեկտրակենցաղսարք» գործարանում և «Հայարդկապ» միավորումում՝ 400-հազարական ռուբլու և այլն։ Մինչդեռ ինքնաֆինանսավորման և տնտհաշվարկի պայմաններում այդ գերնորմատիվային մնացուկները ծանր բեռ են ձեռնարկությունների համար, դրանք չեն վարկավորվում բանկերի կողմից և վեր են ածվում նոր պայմաններում արտադրության հետագա զարգացման հիմնական խոչընդոտի։ Այդ հարցը քննարկվել է հանրապետության Մինիստրների խորհրդում հրավիրված ձեռնարկությունների դիրեկտորների հատուկ խորհրդակցությունում։

Միանգամայն ակնհայտ է, որ սեփական միջոցների հաշվին ձեռնարկության զարգացումը ֆինանսավորելիս կարելի է ապավինել միայն իր կոլեկտիվի աշխատանքի արդյունքներին, քանի որ լրիվ տնտհաշվարկի պայմաններում մինիստրությունից ամեն կարգի ֆինանսական հատկացումներ հայցելը, բացի նորմատիվներով նախատեսվածից, բացառվում է։ Ձեռնարկություններից միջոցներ չեն վերցվելու և չեն էլ հատկացվելու. սահմանվում են տնտեսությունը վարելու պայմանների խիստ շրջանակներ։

Ցածր շահութաբեր և վնասաբեր ձեռնարկությունների տնտեսական պայմանների հավասարեցման նպատակով սահմանված է անցման ժամանակաշրջան, որը սահմանափակվում է տասներկուերորդ հնգամյակի շրջանակներում։ Այդ ընթացքում թույլատրված է մինիստրություններում ստեղծել կենտրոնացված ֆոնդեր ու ռեզերվներ տեխնիկապես հետ մնացող ձեռնարկություններին օգնություն ցույց տալու համար։

Անհրաժեշտ է առանձնահատուկ շեշտել, որ էկոնոմիկայի վերակառուցման նոր պայմաններում հանրապետության տարածքում տեղաբաշխված գիտական բոլոր հաստատությունների գործունեության համաձայնեցման, գիտատեխնիկական առաջադիմության արագացման, միասնական գիտատեխնիկական քաղաքականության գործում բացառիկ պատասխանատու խնդիրներ են ծառացած ՀՍՍՀ Մինիստրների խորհրդի, գիտությունների ակադեմիայի, համապատասխան մինիստրությունների ու գերատեսչությունների առջև։ Դրանց հաջող լուծումը տարբեր ճյուղերի գիտահետազոտական, կոնստրուկտորական և տեխնոլոգիական կազմակերպությունների, գիտաարտադրական ու արտադրական միավորումների համատեղ աշխատանքի նոր, առաջադիմական ձևերի կիրառման լայն հնարավորություններ կընձեռի։ Դրան կնպաստի նաև ինժեներական կենտրոնների, ինչպես նաև տարբեր պրոֆիլի կոնսուլտատիվ և ներդրման կազմակերպությունների ստեղծումը, որոնք կոչված են ձեռնարկություններին ու միավորումներին իրական օգնություն ցույց տալու՝ նոր տեխնիկան ու տեխնոլոգիան յուրացնելիս։ Այստեղ, ինչպես տեսնում ենք, պետպլանի, գիտությունների ակադեմիայի, մինիստրությունների ու գերատեսչությունների, միավորումների ու ձեռնարկությունների համար գործունեության լայն ասպարեզ է բացված։ Չպետք է անտեսել այն հանգամանքը, որ առանց գիտատեխնիկական առաջադիմության, նոր տեխնիկայի և տեխնոլոգիայի նկատմամբ լուրջ վերաբերմունքի՝ ոչ մի արդյունավետ տնտհաշվարկ ու ինքնաֆինանսավորում չի կարող լինել։ Պետական ձեռնարկության մասին օրենքում աներկբայորեն նշված է, որ գիտության և տեխնիկայի նվաճումների մասշտաբային, կոմպլեքսային ու ժամանակին կիրառումը, արդյունավետ և որակյալ արտադրանքի թողարկումը ձեռնարկության շահույթների հավելաճի, արտադրական ու սոցիալական զարգացման ինքնաֆինանսավորումն ապահովող միջոցներից են։



Ժողովրդական տնտեսության կառավարման վերակառուցման, էկոնոմիկայում տնտեսավարման նոր մեթոդներին անցնելու կարևորագույն ուղղություններից մեկը պետական ձեռնարկության մասին օրենքի դրույթների հիման վրա հանրապետական կառավարման մարմինների գործունեության վերակառուցումն է։ 1988 թվականից գործողության մեջ մտնող օրենքում ուղղակիորեն նշված է, որ ձեռնարկությունը ակտիվորեն մասնակցում է տվյալ տերիտորիայի տնտեսական և սոցիալական կոմպլեքսային զարգացման, ազգաբնակչության պահանջմունքների լավագույն բավարարման նպատակով ժողովրդական դեպուտատների սովետների՝ օրենսդրությանը համապատասխան իրականացվող գործունեությանը, ինչպես նաև սահմանված նորմատիվների համաձայն տեղական բյուջեի կազմավորմանը։

Որպես պետական իշխանության բարձրագույն գործադիր և կարգադրիչ մարմին՝ հանրապետության Մինիստրների խորհուրդն իր տերիտորիայում ապահովում է արտադրողական ուժերի համակողմանի զարգացումը, սոցիալական և տնտեսական խնդիրների կոմպլեքսային լուծումը, պատասխանատվություն է կրում ժողովրդական տնտեսության վիճակի համար։

Սկսվում է անցում դեպի տնտեսական և սոցիալական զարգացման կոմպլեքսային պլանների մշակում, ընդգրկելով տվյալ տարածքում տեղաբաշխված բոլոր ձեռնարկությունները, միավորումները և կազմակերպությունները՝ անկախ գերատեսչական պատկանելությունից։

Այդ կոմպլեքսային պլանների հիմնական նպատակն է տնտեսական և սոցիալական զարգացման ցուցանիշների գիտականորեն հիմնավորված օպտիմալ մակարդակին հասնելը։

**— Ինչպե՞ս է հանրապետության ժողովրդական տնտեսությունը նախապատրաստվում տնտեսավարման և կառավարման նոր պայմանների անցնելու համար:**

— Ինչպես արդեն ասվեց, շուտով զգալիորեն կընդլայնվի նոր տնտեսակարգի պայմաններում աշխատող ձեռնարկությունների շրջանակը։

Եկող տարվա սկզբից լրիվ տնտհաշվարկի և ինքնաֆինանսավորման են անցնում հանրապետության 104 միավորումներ, ձեռնարկություններ ու կազմակերպություններ։ Այդ թվում գազի, նավթի, պարարտանյութերի, հաստոցաշինական, քիմիական, էլեկտրատեխնիկական արդյունաբերության, սև և գունավոր մետալուրգիայի, թեթև արդյունաբերության համար մեքենաշինության, բժշկակենսաբանական, ճանապարհային ու գյուղատնտեսական մեքենաշինության, երկաթուղային տրանսպորտի, կապի միութենական 51 ձեռնարկություն, թղթի և փայտամշակման, շինանյութերի արդյունաբերության, ձկնային տնտեսության, անտառային տնտեսության հանրապետական ձեռնարկություն և միավորում։ Այդ նույն ժամկետում տնտեսավարման նոր պայմանների են անցնում նաև քաղաքացիական ավիացիան, կապը, տեղական արդյունաբերությունը, կենցաղային սպասարկումը։ Հանրապետության ավտոմոբիլային տրանսպորտը ինքնաֆինանսավորման և լրիվ տնտհաշվարկի կանցնի 1988 թ. ընթացքում։ Արտադրական ճյուղերի մյուս կազմակերպությունները նոր տնտեսակարգի կփոխադրվեն 1989 թ. հունվարից։

ՀԿԿ Կենտկոմը և ՀՍՍՀ Մինիստրների խորհուրդը մշտապես իրենց ուշադրության կենտրոնում են պահում հանրապետության ժողովրդական տնտեսության ճյուղերը լրիվ տնտհաշվարկի և ինքնաֆինանսավորման փոխադրելու գործը։ Այդ հարցի վերաբերյալ հրավիրվեց հանրապետական տնտեսագիտական խորհրդակցություն, որին մասնակցեցին ՍՍՀՄ պետպլանի և ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի առաջատար մասնագետները։ Հանրապետության տնտեսական մարմինների, կուսակցական կազմակերպությունների ուշադրու-

թյունը մշտապես բևեռվում է չլուծված պրոբլեմների վրա։ Նրանց անհրաժեշտ օգնություն է ցույց տրվում։ Միութենական ենթակայության մինիստրությունները, գերատեսչությունները ու ձեռնարկությունները պետք է անցումը կատարեն տնտեսավարման նոր սկզբունքներին խստիվ համապատասխան։ Դեռևս շատ անելիքներ ունեն հանրապետական տնտեսական մարմինները։

Տեղերում գործում են նախապատրաստական միջոցառումների կոմպլեքսի իրականացման հանձնաժողովներ և աշխատանքային խմբեր։ 28 ձեռնարկություններում կատարված են ուսումնասիրություններ։ Մշակվում են առաջարկություններ արտադրության զարգացման, տեխնիկական մակարդակի բարձրացման, տեխնոլոգիական պրոցեսների կատարելագործման, սարքավորումների աշխատանքի հերթափոխայնության բարձրացման, նյութատեխնիկական բազայի մշտական նորացման, արտադրանքի որակի և մյուս հարցերի շուրջ։

Տնտեսավարման նոր մեթոդների ներդրումը կազմակերպված ձևով իրականացնելու նպատակով ձեռնարկություններում անց են կացվել կուսակցական և կոլեկտիվների ժողովներ, քննարկվել են ՍՄԿԿ Կենտկոմի 1987 թ. հունիսյան և ՀԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումների որոշումներ, էկոնոմիկայի կառավարման արմատական վերակառուցման կոնկրետ հարցերը։

Միջոցներ են ձեռնարկվում, որպեսզի ղեկավար և ինժեներատեխնիկական աշխատողները, վարպետները և բրիգադավարները քաջատեղյակ լինեն նոր պայմաններում աշխատանքի հիմնական սկզբունքներին։ 12 ձեռնարկություններում պարապմունքները սկսվել են սեպտեմբերի մեկից։ Ելնելով տասներկուերորդ հնգամյակի ցուցանիշներից՝ ճշգրտվում են տնտեսական և սոցիալական զարգացման 1988—1990 թթ. պլանները, դրանք համապատասխանեցնելով ձեռնարկության մասին օրենքի դրույթներին։

Պետք է նկատի ունենալ, որ պետական պատվերները, որոնք մտցվելու են 1988 թ. պլանի հետ մեկտեղ, ընդգրկում են միութենական կառավարության հաստատած առաջադրանքները, տվյալ մինիստրության պատվերները և ուղղակի երկարաժամկետ տնտեսական կապերի հիման վրա ձեռնարկության պարտավորությունները։ Այս կարգը պլանավորման պրակտիկայում մտցվում է առաջին անգամ։ Այսպես, «Լույս» արտադրամիավորման լամպերի գործարանի պետպատվերները կազմում են 25—30 տոկոս, իսկ ՍՍՀՄ էլեկտրատեխնիկական արդյունաբերության մինիստրությանը՝ 65 տոկոս։

Մեր ուսումնասիրությունների և ստուգումների արդյունքները հիմք են տալիս ենթադրելու, որ լրիվ տնտեսական հաշվարկի անցնելիս շատ ձեռնարկություններ կհանդիպեն որոշակի դժվարությունների։ Դրանց պատճառները տարբեր են։ Օրինակ, «Հայէլեկտրաշարժիչ», Երևանի հաստոցաշինական արտադրական միավորումները և ֆրեզերային հաստոցների գործարանը դժվարությունների առջև կկանգնեն ֆինանսական անբավարար վիճակի պատճառով։ Չի լուծված նյութական ռեսուրսներով ապահովության հարցը «Հայէլեկտրակոնդենսատոր», «Հայկենցաղքիմ», «Ալմաստ» արտադրամիավորումներում, Լենինականի «Էլեկտրակենցաղսարք» գործարանում։

Արտադրական պլանները չկատարելու հետևանքով ֆինանսական տագնապալի վիճակ է ստեղծվել Երևանի ֆրեզերային հաստոցների գործարանում։ Քիմիական ռեակտիվների գործարանի արտադրական պլանները հաշվեկշռված չեն հումքի մի քանի տեսակների հատկացված ֆոնդերի հետ։ «Հայէլեկտրակոնդենսատոր» արտադրամիավորմանը հայտնի չեն, թե նախատեսված ֆոնդերի դիմաց նյութերը ո՞վ պետք է մատակարարի։

Ցավոք, այս կարգի օրինակները կարելի է շարունակել, սակայն ասվածն էլ բավական է հաստատելու համար, թե տնտեսական գործունեության բոլոր բնագավառներում ինչպիսի անհապաղ, անհետաձգելի միջոցներ են պահանջվում ձեռնարկությունները լրիվ տնտհաշվարկի և ինքնաֆինանսավորման փոխադրելու համար։

Մինչդեռ առանձին ձեռնարկությունների ղեկավարները վերակառուցումը պայմանավորում են «վերևից» ստացվելիք ցուցումների, տնտեսական նորմատիվների ճշգրտումների հետ՝ դրան չհակադրելով առանձին արտադրատեսակների վնասաբերության և արտադրանքի ցածր շահութաբերության պատճառների խոր վերլուծությունը։ Առանց արտադրության տեխնոլոգիայի արմատական բարելավման, մաշված սարքավորումները փոխելու, տեսականին



թարմացնելու, արտադրանքի որակը բարելավելու գործում նախաձեռնողականություն հանդես բերելու՝ ոչինչ չի ստացվի։

Առանձին միավորումների ու ձեռնարկությունների ղեկավարներ, լրիվ տնտեսական հաշվարկի և ինքնաֆինանսավորման սկզբունքներն ակտիվորեն ներդնելու նպատակով կազմակերպական ու քաղաքական աշխատանքի ուժեղացումն իրենց առաջնահերթ խնդիրը չեն համարում, այն թողել են ինքնահոսի։ Առանձին տեղերում էլ այդ կարևոր գործը վերապահել են առավել պակաս պատասխանատու պոստերում գտնվող անձանց։

Արտադրության հիմնական օղակում և էկոնոմիկայի առանցքային ճյուղերում անցումը լրիվ տնտեսական հաշվարկի պետք է ավարտվի մինչև ընթացիկ հնգամյակի վերջը։ Ցանկանում եմ մեկ անգամ ևս շեշտել, որ այդ անցումը պահանջում է ոչ միայն ձեռնարկությունների ղեկավարների ու մասնագետների, այլև կոլեկտիվի յուրաքանչյուր անդամի ջանքերը։ Դա նաև կուսակցական և հասարակական կազմակերպությունների առաջնահերթ խնդիրն է, քանի որ այն կոչված է վերափոխելու յուրաքանչյուր աշխատողի հոգեբանությունը, վերաբերմունքը գործի նկատմամբ։ Չէ որ այժմ արդեն աշխատանքի գնահատման ու վարձատրման միակ չափանիշը պետք է լինի նրա քանակը և որակը, ծախսերի և եկամուտների հստակ համաչափումը։

Տնտհաշվարկային հարաբերությունները պետք է արտադրության մեջ դառնան վճռորոշը, հասցվեն մինչև յուրաքանչյուր աշխատատեղ, դրանով իսկ մարդկանց մոտ սերմանելով ձեռնարկության, հանրապետության, երկրի տիրոջ զգացում, որը բարոյական պատասխանատվություն է կրում գործերի վիճակի համար։

**— Ինչպե՞ս են արտացոլվում տնտեսավարման վերակառուցման պահանջները հանրապետության տնտեսական և սոցիալական զարգացման պլաններում:**

— Հայտնի է, որ տնտեսավարման նոր պայմաններում սահմանվելու են մի շարք տնտեսական նորմատիվներ։ Դրանցից են՝ վարձը արտադրական ֆոնդերի, աշխատանքային և բնական ռեսուրսների համար, հաշվարկային շահույթից (եկամուտից) մասհանումները պետական բյուջե, նույնպիսի մասհանումները մինիստրության ռեզերվին՝ արտադրության, գիտության և տեխնիկայի զարգացման ֆոնդին, համանման ֆոնդի ստեղծումը սեփական ձեռնարկության համար, նյութական խթանման, աշխատավարձի, սոցիալական զարգացման ֆոնդերի ստեղծումը։ Կարևոր են ապրանքանյութական արժեքների պաշարների սահմանային մակարդակը, միջին աշխատավարձի աճի և աշխատանքի արտադրողականության աճի հարաբերությունը սահմանող նորմատիվները։

Անհրաժեշտ է համառոտակի անդրադառնալ պլանավորման կատարելագործման, գիտատեխնիկական առաջադիմության արագացման և հանրապետական մարմինների գործունեության վերակառուցման խնդիրներին, դրանց սևեռել բոլոր նրանց ուշադրությունը, որոնցից կախված է կառավարման ու տնտեսավարման վերակառուցման գործը։

Նախ և առաջ հարկ է ընդգծել, որ ժողովրդական տնտեսության զարգացման վրա պլանային ներգործությունն ուժեղացնելու նպատակով արմատապես փոխվել է պետական պլանների կազմավորման համակարգը, ակտիվացվում է կենտրոնական պլանավորման ներգործունությունը։ Լրիվ տնտհաշվարկի և ինքնաֆինանսավորման սկզբունքներով աշխատանքների կազմակերպման հիման վրա վճռականորեն ընդլայնվում են ձեռնարկությունների ու կազմակերպությունների տնտեսական ինքնուրույնությունը, կառավարման լայն դեմոկրատացումն այն հաշվով, որպեսզի աշխատանքային կոլեկտիվները իրականում դառնան այնպիսի պլանների ակտիվ ստեղծողներ, որոնք օրգանապես միավորեն պետության, ձեռնարկության և յուրաքանչյուր աշխատողի անձնական շահերը։

Արդի պայմաններում սոցիալ-տնտեսական զարգացման արագացման վրա պլանի ներգործությունը հիմնականում պետք է բնորոշվի գիտատեխնիկական հեղափոխության նվաճումների և պլանային էկոնոմիկայի միացման խնդիրների իրականացմամբ, սոցիալական ոլորտի առաջընթաց զարգաց-

մամբ, ճյուղային ու ռեգիոնալ պրոբլեմների կոմպլեքսային լուծմամբ, արտադրական պոտենցիալի և բոլոր տեսակի ռեսուրսների արդյունավետ օգտագործմամբ, տնտեսական մեխանիզմի մշտական կատարելագործմամբ։

Գիտատեխնիկական առաջադիմությունն արագացնելու նպատակով անհրաժեշտ է ժողովրդատնտեսական պլանավորումը կենտրոնացնել միջճյուղային նպատակային գիտատեխնիկական ծրագրերի, ՏՓԽ-ի անդամ երկրների գիտատեխնիկական առաջադիմության կոմպլեքսային ծրագրի, ինչպես նաև միջճյուղային գիտատեխնիկական կոմպլեքսների զարգացման վրա։

Պետք է հրաժարվել պետական պլաններում տարանջատ առաջադրանքներ, մասնակի հարցերի լուծումներ սահմանելուց և անցնել այնպիսի ընդհանրացնող ցուցանիշների հաստատման, որոնք բնորոշում են գործունեության արդյունավետությունը, ինչպես, օրինակ, աշխատանքի արտադրողականության աճը, ֆոնդահատույցը, արտադրության մետաղատարության և էներգատարության նվազեցումը, տեխնիկական մակարդակի և արտադրանքի որակի բարձրացումը։

Այդ նպատակով մեծ ծավալի աշխատանք պետք է կատարեն հանրապետության պետպլանը, գիտությունների ակադեմիան, մինիստրություններն ու գերատեսչությունները, ձեռնարկությունների ու կազմակերպությունների կոլեկտիվները։ Գաղտնիք չէ, որ նոր տեխնիկայի պլանները մեզանում հաճախ կազմվում են իբրև փոխադարձորեն չկապակցված միջոցառումների հավաքածու, որի գործնական արդյունքները դժվար է կանխագուշակել և ի՞նչ կըստացվի այդպիսի պլաններից, ոչ ոք չի կարող ասել։ Հանրապետության շատ ձեռնարկություններ ունեն տեխնիկական վերազինման, գիտության և տեխնիկայի նվաճումների ներդրման կոմպլեքսային պլաններ, մինչդեռ շատ ցուցանիշների գծով (ձեռքի աշխատանքի կրճատում, աշխատանքի արտադրողականության աճ, արտադրանքի որակ, դրա նորացում), դրությունը չի բարելավվել, իսկ մի շարք դեպքերում նույնիսկ վատացել է։ Ընդհանուր առմամբ, աշխատանքի արտադրողականության աճի տեմպերով միութենական հանրապետությունների մեջ մենք զբաղեցնում ենք ութերորդ տեղը, իսկ բարձրորակ արտադրանքի տեսակարար կշռի գծով՝ տասնմեկերորդը։ Բայց չէ՞ որ այդ ցուցանիշները ուղղակիորեն պայմանավորված են արտադրության գիտատեխնիկական մակարդակով։ Այս հանգամանքը պետք է լուրջ մտահոգության պատճառ ձեռնարկությունների ղեկավարությանը, կուսակցական, արհմիութենական կազմակերպություններին, աշխատանքային կոլեկտիվներին։

Հայաստանի արդյունաբերական շատ ձեռնարկություններ և գիտական հաստատություններ մասնակցում են ինչպես միութենական, այնպես էլ հանրապետական կոմպլեքսային նպատակային գիտատեխնիկական ծրագրերի իրականացմանը։ Այդպիսի ծրագրերի ընդհանուր թիվը 53 է, որից 16-ը՝ հանրապետական։ Դրանց կատարման համար ներգրավված են գիտական, կոնստրուկտորական և արտադրական մեծ ուժեր։ Սակայն այստեղ էլ պետք է նկատել, որ թեև իրենց ձևով մեր գործողությունները համապատասխանում են պլանավորման և կառավարման վերակառուցման վերաբերյալ ընդունված որոշումների տառին, այնուամենայնիվ, ըստ էության, նպատակային ծրագրերը դեռևս չեն դարձել առաջադրված ծրագրին հասնելու գործուն միջոց։ Սահմանափակվեմ միայն մեկ օրինակով. երկար տարիներ (շուրջ երկու հնգամյակ) գոյություն ունի ձեռքի աշխատանքի վերացման նպատակային կոմպլեքսային ծրագիրը, որին մասնակցում են ժողովրդական տնտեսության գրեթե բոլոր ճյուղերը և ձեռնարկությունները։ Սակայն ձեռքի աշխատանքի կրճատման որևէ շոշափելի արդյունք չի երևում։ Տնտեսավարման նոր պայմաններում արտադրության գիտատեխնիկական մակարդակը դառնում է որոշիչ։ Գիտության և արտադրության ինտեգրացիայի առավել արդյունավետ ուղին, որը պետք է ապահովի արագ առաջընթացը տեխնիկայի և տեխնոլոգիայի նորագույն ասպարեզներում, միջճյուղային գիտատեխնիկական կոմպլեքսների ստեղծումն է։ Անցյալ տարի հանրապետությունում, ըստ առավել հրատապ պրոբլեմների, ստեղծվել են մի շարք կոմպլեքսներ, որոնցից կարելի է հիշատակել ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի և գունավոր մետալուրգիայի մինիստրության «Ջերմասինթեզը», որի կազմում ընդգրկվել են ՀՍՍՀ գիտությունների ակադեմիայի քիմիական ֆիզիկայի ինստիտուտը և Կիրովականի բարձրջերմային տաքացուցիչների գործարանը։ ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի Սիբիրի բաժանմունքի «Կատալիզատոր» կոմպլեքսում ներգրավված են «Պլաստպոլիմեր» ԳԱՄ-ի Երևանի բաժանմունքը և Ալավերդու լեռնաքիմիական կոմբինատը։ Նշված կոմպլեքսների երկու տարվա աշխատանքը հաստատում է դրանց արդյունավետությունը։ Սակայն այստեղ էլ կան մի շարք չլուծված հարցեր։ Տնտեսավարման նոր մեթոդների կիրառման պայմաններում փոխգործողության այս ձևին առավել արդյունավետություն հաղորդելու համար ՀՍՍՀ գիտությունների ակադեմիան և պետպլանը պետք է միջոցառումներ մշակեն կոմպլեքսների կազմի մեջ մտնող կամ նրանց աշխատանքին մասնակցող գիտական հաստատությունների փորձարարդյունաբերական բազան զարգացնելու համար, քննարկեն երկրում արդեն ստեղծված միջճյուղային գիտատեխնիկական կոմպլեքսներում հանրապետության գիտական հաստատությունների և արդյունաբերական ձեռնարկությունների առավել լայն մասնակցությունն ապահովելու հարցերը, ուժեղացնեն այդ ծրագրերում ընդգրկված գիտական հիմնարկների ու ձեռնարկությունների փոխգործողությունը։

Մշակելով տնտեսական և սոցիալական զարգացման պլաններ՝ մենք պետք է հաշվի առնենք նաև այսպիսի փաստերը. անցած հնգամյակում բնակելի շինարարությամբ մեր հանրապետությունը միության մեջ գտնվում էր տասներորդ տեղում և նկատելիորեն հետ էր մնում միութենական միջին ցուցանիշներից։ Մեզանում հազար բնակչի հաշվով կառուցվել է ընդամենը 1611,3 քառ. մետր բնակմակերես՝ երկրի միջին 1980,8 քառ. մետրի դիմաց։ Եվ սա բնակչության մեկ շնչին ընկնող զգալիորեն պակաս բնակֆոնդի պայմաններում։ Համանման իրավիճակ է ստեղծվել առողջապահության բազայի ստեղծման, առևտրի, կենցաղային սպասարկման, մշակույթի և սոցիալական ոլորտի մյուս ճյուղերում։ Հատուկ ուշադրություն են պահանջում բնակարանային-կոմունալ տնտեսության ճյուղերը, մասնավորապես ջրամատակարարման, կոյուղու, կենտրոնացված ջերմամատակարարման համակարգերը։

Հասկանալի է, որ այս ամենն այսօր արդեն իրավացիորեն դատապարտված «մնացորդային» սկզբունքների հետևանք է, որ կիրառվել է մինչև այժմ սոցիալական ոլորտի նկատմամբ։

Այդ ոլորտի նյութական բազայի զարգացումը, մարդկանց առողջ կենցաղի և հանգստի համար անհրաժեշտ պայմանների ստեղծումը դառնում են արտադրական ձեռնարկությունների ու կազմակերպությունների անմիջական հոգսը։ Նրանք պարտավոր են կառուցել բնակարաններ, մանկական հաստատություններ, առողջարաններ, մարզական բազաներ։ Մի խոսքով, միայն աշխատավորների և նրանց ընտանիքների նկատմամբ մշտական հոգատարությամբ կարող է ձեռնարկությունն ապահովել իր կայուն և արդյունավետ գործունեությունը։

Սոցիալական զարգացման հարցերի վերաբերյալ հանրապետությունում պետք է անհրաժեշտ հետազոտական և վերլուծական աշխատանք կատարվի։ Գիտական և գործնական լուրջ մշակումներ են պահանջում ապահովվածության նորմատիվների հիմնավորումը, քաղաքների և շրջանների ցուցանիշների մերձեցումը։ Ընդ որում պետք է հաշվի առնվեն առանձին ռեգիոնների, հատկապես լեռնային և նախալեռնային շրջանների առանձնահատկությունները, ժողովրդագրական իրավիճակն ու մյուս գործոնները։ Այս կարևորագույն աշխատանքում պետք է ակտիվորեն ներգրավվեն տնտեսագիտական հաստատությունները, պետպլանը, գիտությունների ակադեմիան։ Սոցիալական ոլորտը, հոգատարությունը մարդու նկատմամբ այսօր մեր կուսակցության, ամբողջ հասարակության առաջնահերթ հոգսն է։

Ինչպես նշվեց ՍՄԿԿ XXVII համագումարում, հատկապես այդ ոլորտում են իրացվում տնտեսական գործունեության արդյունքները։ Դրանք շոշափում են աշխատավորների կենսական շահերը և մարմնավորում սոցիալիզմի բարձրագույն նպատակները։ Այստեղ առավել վառ կերպով է դրսևորվում սոցիալիստական հասարակարգի հումանիստական բնույթը, նրա որակական տարբերությունը կապիտալիզմից։ Եվ հենց սոցիալիզմի առավելությունների բացահայտման և իրացման խնդիրն է դրվում տնտեսական մեխանիզմի ամբողջ համակարգի վերակառուցման հիմքում։

տահման չկա։ «Մարդը,— նշել է Կ. Մարքսը,— մյուս բոլոր կենդանիներից տարբերվում է իր պահանջմունքների անսահմանափակությամբ և դրանց ընդլայնման ունակությամբ» (Архив К. Маркса и Ф. Энгельса, т. 2/7։ М. «Политиздат», 1933. стр. 235)։ Բայց հասարակության զարգացման յուրաքանչյուր պատմական ժամանակահատվածում պահանջմունքները սահմանափակ են։

Դրա հետ մեկտեղ հաճախ հանդիպում ենք պահանջմունքների անսահմանափակության այնպիսի մեկնաբանությունների, որոնք տանում են դեպի դրանց ֆետիշացում։ Սոցիալիստական հասարակարգը մենակյացների հասարակարգ չէ, բայց, մյուս կողմից, պակաս վտանգավոր չէ նյութական արժեքների ֆետիշացումը։ Դա վերջին հաշվով տանում է դեպի հասարակության իսկական նպատակի՝ անհատի լիակատար և համակողմանի զարգացման, խեղաթյուրում։

Սոցիալիստական հասարակությանը խորթ է կյանքի նկատմամբ սպառողական վերաբերմունքը, սպառման պաշտամունքը, որն ամեն կերպ արմատավորում են բուրժուական հասարակությունում։ Իհարկե, եթե մարդ նպատակադրվի անսահմանորեն և անզուսպ կերպով օգտագործելու նյութական բարիքները, ապա երբեք, ոչ մի հասարակությունում հնարավոր չի լինի այդպիսի պայմաններ ստեղծել հասարակության բոլոր անդամների համար։ Սոցիալիզմի օրոք արժեքների համակարգում նյութական բարիքները ոչ այլ ինչ են, եթե ոչ հասարակության բոլոր անդամների հոգևոր, ստեղծագործական զարգացման միջոց։

Ի դեպ մեր հասարակությունում էլ երբեմն ականատես ենք լինում կյանքի նկատմամբ սպառողական վերաբերմունքի։ Այդպիսի հոգեբանության հիմքում ընկած է արժեքային կողմնորոշման խեղաթյուրումը։ Կյանքում իսկական շահեր ու նպատակներ չունենալը, աշխատանքի ոչ ստեղծագործական բնույթը, սխալ դաստիարակությունը, ցածր կուլտուրան և այլ հանգամանքներ ձևավորում են զուտ սպառողական վերաբերմունք կյանքի նկատմամբ, իրի պաշտամունք։ Դա երբեմն դրսևորվում է միանգամայն տգեղ ձևերով՝ կուտակողականությամբ, դեֆիցիտային ապրանքների հետևից ընկնելով, սպառման ավելի բարձր մակարդակի հասնելու անզուսպ ձգտումով։ Ինչ-որ շրջանակներում ընդունված են «հեղինակավոր» սպառման ստանդարտներ, որոնք ներառնում են որոշակի առարկաների մի ամբողջ հավաքածու։ Ընդ որում հասարակական կարծիքի մի մասում առաջանում է մի այնպիսի կեղծ և անառողջ պատկերացում, թե այդ բոլոր «ֆիրմային» առարկաների ձեռքբերումը բարձրացնում է դրանց տիրոջ սոցիալական ստատուսը։ Նույն կերպ է մտածում նաև հենց ինքը՝ դրանց տերը։ Ավելին, նա սկսում է հակադրվել նրանց, ովքեր այդպիսի «հաջողությունների» չեն հասել կյանքում։ Այս դեպքում մարդուն սկսում են գնահատել ոչ թե աշխատանքի արդյունքով, ոչ թե այն բանով, թե նա ինչ է տվել հասարակությանը, այլ նրանով, թե նա ինչ և ինչքան ունի։ Իսկ եթե հաշվի առնենք այն հանգամանքը, որ այդ ունեցվածքի հիմքում երբեմն ընկած են լինում անաշխատ եկամուտներ, ապա հարկ կլինի խոստովանել, որ այդպիսի երևույթները բարոյական լուրջ վնաս են հասցնում հասարակությանը։ Խախտվում է սոցիալական արդարությունը, որը մարդիկ ավելի ծանր են տանում, քան սովը և այլ զրկանքներ։ Ահա թե ինչու շատ կարևոր է պահանջմունքների կառավարումն ու խելամիտ ձևավորումը։

Պահանջմունքների, դրանց ձևավորման և առավելագույն բավարարման պրոբլեմների ուսումնասիրումը յուրաքանչյուր կոնկրետ պատմական ժամանակահատվածում անմիջականորեն կապված է ռացիոնալ սպառման հեռանկարային նորմատիվային ցուցանիշների կամ, ինչպես սովորաբար ասում են, սպառման ռացիոնալ նորմաների մշակման հետ, որոնք պահանջմունքների բավարարման, դրանց խելամտության չափանիշ են ծառայում։ Նորմաներն այն կողմնորոշիչներն են, որոնց իրականացումը կնշանակի ժամանակակից գիտական պատկերացումների տեսանկյունից մարդկանց խելամիտ պահանջմունքների լրիվ բավարարում, աշխատուժի վերարտադրություն, որը սոցիալիստական հասարակության հետագա կատարելագործման պայմաններում ապահովում է անհատի համակողմանի զարգացումը։ Ուստի այդ նորմաները պահանջմունքների քանակական աճի վերին սահմաններն են, որոնց ձեռքբերման դեպքում տեղի է ունենում տարբեր պահանջմունքների քանակական հագեցում, և սպառման զարգացումը շարունակվում է նրա որակական կատարելագործման ուղղությամբ։



Հասարակության տնտեսական զարգացման արդի փուլում ռացիոնալ նորմաների մշակումը համապետական կարևորություն ունեցող գործ է։ Դեռևս տասը տարի առաջ ՍՍՀՄ գիտությունների ակադեմիան, ՍՍՀՄ գիտության ու տեխնիկայի պետական կոմիտեն և ՍՍՀՄ պետպլանն ընդունեցին կոորդինացիոն պլան «Սպառողական կոմպլեքսների գծով ապրանքների ու ծառայությունների բնակչության կողմից սպառման նորմատիվների» մասին։ Պլանի մշակմանը մասնակցեցին ՍՍՀՄ մոտ 30 գիտահետազոտական ինստիտուտ, մինիստրություն ու գերատեսչություն։ Ուսումնասիրման շնորհիվ ճշգրտվեցին 187 առանձին ապրանքներ (կուլտուր-կենցաղային նշանակության և տնտեսական գործածության առարկաների ապրանքաշրջանառության մոտ 65—70 տոկոս և ծառայությունների 15 տեսակներ) ներառնող 20 կարևորագույն ապրանքային խմբերի գծով ռացիոնալ սպառման ցուցանիշները։

Այդպիսի նորմաների մշակման բարդությունը պայմանավորված է պահանջմունքների զարգացման դինամիկայով, դրանց անընդհատ փոփոխմամբ ու բարձրացմամբ։ Ուստի ռացիոնալ նորմաները մեկընդմիշտ սահմանված մեծություններ չեն, և պահանջմունքների բավարարման չափը նրանք բնութագրում են սոսկ որոշակիորեն տեսանելի հեռանկարի առումով։ Ռացիոնալ սպառման այն ցուցանիշները, որոնք մարդու և նրա պահանջմունքների մասին ժամանակակից գիտության տեսանկյունից ամենանպատակահարմարն են, որոշ ժամանակ անց կարող են հնանալ, որովհետև փոխվում է ինքը՝ մարդը, զարգանում և որակապես կատարելագործվում են նրա պահանջմունքները։ Բայց դա բնավ չի նշանակում, թե սպառման նորմաները պահանջմունքների բավարարման չափը գնահատելու հուսալի գործիք չեն։ Յուրաքանչյուր որոշակի ժամանակահատվածում, երբ անցնում է արտադրության ու սպառման միջին ժամկետային կանխագուշակման շրջանը, դրանք սահմանված են միանշանակ։

Պարենային ապրանքների սպառման ռացիոնալ նորմաները սահմանում են դրանց այնպիսի քանակ, որը ժամանակակից ֆիզիոլոգիական գիտության տեսակետից ապահովում է մարդու լիարժեք և բազմապիսի սնունդը, նրա ուժի և էներգիայի ծախսման լրիվ վերականգնումն արտադրական գործունեությանը համապատասխան։ Ոչ պարենային ապրանքների համար դա յուրաքանչյուր մարդու տրամադրության տակ եղած իրերի սպառողական ֆոնդի, ինչպես նաև ամբողջ ընտանիքի կողմից օգտագործվող առարկաների որոշակի քանակի մաշված մասի փոխարեն ձեռք բերածն է։

Ռացիոնալ նորմաների մշակումը սահմանում է պահանջարկի հեռանկարները, նպաստում սպառման օպտիմալ կառուցվածքի ձևավորմանը, հասարակական պահանջմունքների համակարգի և հասարակական արտադրության կառուցվածքի առավելագույն համապատասխանության ձեռքբերմանը։ Դա հասարակությանը հնարավորություն է տալիս տնտեսել զգալի քանակությամբ միջոցներ ու ռեսուրսներ, քանի որ ձեռք է բերվում ժողովրդական սպառման ապրանքների առաջարկի և բնակչության պահանջարկի որոշակի համապատասխանություն, ինչ-որ չափով վերանում է գերնորմատիվային ապրանքային պաշարների կուտակման հավանականությունը։ Այդ ցուցանիշների կատարելագործումը հնարավորություն կտա հետագայում մշակել արդյունաբերության՝ սպառման առարկաներ թողարկող ճյուղերի առավել ռացիոնալ կառուցվածք։

Պետք է նշել, որ բուրժուական տեսաբանները, աղավաղելով բուն իրավիճակը, բանն այնպես են ներկայացնում, թե ռացիոնալ նորմաները իբր քարտային սիստեմի նոր տարատեսակն են, սիստեմ, որը յուրաքանչյուր մարդու սպառումը պարտադիր կարգով այդ նորմաների շրջանակներն է մտցնում։ Այսպիսով, անտեսվում և խեղաթյուրվում են ռացիոնալ նորմաների իսկական տնտեսական իմաստը և դրանց նշանակությունը սոցիալիստական հասարակության հետագա զարգացման համար։ Չէ որ գիտականորեն հիմնավորված նորմաների մշակման նպատակը սպառման ոչ թե սահմանափակումն է, այլ մարդկանց առողջությունն ու նրանց երկարակեցությունն ապահովող առավել ռացիոնալ սպառման հասնելը։

Բնական է, որ սպառման նորմաները շերտավորվում են բնակչության սեռատարիքային և պրոֆեսիոնալ կազմին, ազգային առանձնահատկություններին համապատասխան։ Այսպես, օրինակ, բնակչության տարբեր խմբերի համար սննդի ամենօրյա բաժնի նկատմամբ պահանջմունքները և չափերը, որոնք արտահայտվում են կիլոկալորիաներով, սպիտակուցներով, ճարպերով ու ածխաջրերով, տարբեր են ու կախում ունեն աշխատավորների ծախսած էներգիայից՝ նայած նրանց սեռին, տարիքին, մասնագիտությանը և այլ պայմաններին։ Սննդամթերքի սպառման ֆիզիոլոգիական նորմաները պարենի ռացիոնալ ընտրության հիման վրա մշակում է ՍՍՀՄ բժշկական գիտությունների ակադեմիան։ Այդ աշխատանքին մասնակցում են ինչպես բժիշկներ, ֆիզիոլոգներ, այնպես էլ տնտեսագետներ, ինժեներ-տեխնոլոգներ և այլ մասնագետներ։

Պետք է նշել, որ մեր հանրապետության բնակչության համար մի շարք հիմնական սննդամթերքների՝ 70-ական թվականներին մշակված նորմաներն զգալիորեն ցածր են միութենական համապատասխան ցուցանիշներից։ Խոսքը վերաբերում է այնպիսի սննդամթերքներին, ինչպիսիք են՝ միսը և մսամթերքները (72 կգ և 82 կգ), կաթը և կաթնամթերքները (381 կգ և 434 կգ), ձուն (241 հատ և 292 հատ), ձուկը և ձկնամթերքները (12,8 կգ և 18,2 կգ), կարտոֆիլը (57 կգ և 97 կգ), բանջարեղենը և բոստանային կուլտուրաները (135 կգ և 146 կգ)։ Մինչդեռ սակավարժեք սննդամթերքների շարքը դասվող հացի և հացամթերքների սպառման նորմաներն զգալիորեն բարձր են (132 կգ և 120 կգ)։ Այս տարբերությունները մասամբ պայմանավորված են ազգային և կլիմայական առանձնահատկություններով։ Բայց այդպիսի մոտեցումը հազիվ թե ընդունելի լինի։

Նորմաների հիմնավորվածությունը կարևոր նշանակություն ունի պահանջմունքների կառավարման և սպառման ռացիոնալացման համապետական խնդիրների լուծման համար։ Ե՛վ պարենային, և՛ ոչ պարենային ապրանքների մեծ մասի համար դեռևս ռացիոնալ նորմաներ չեն մշակված։ Ընդհանուր առմամբ գոյություն ունի թերսպառում։ Ռացիոնալ նորմաներին հասնելը կընթանա ինչպես այն ապրանքների սպառման քանակական աճի ուղղությամբ, որոնց սպառումը հետ է մնում նորմաների մակարդակից, այնպես էլ սպառման կառուցվածքի որակական կատարելագործման, սակավարժեք մթերքներից ավելի արժեքավորներին անցնելու միջոցով։ Միաժամանակ փաստական սպառման ռացիոնալ նորմաներով սահմանված մակարդակի գերազանցումը կնշանակի մթերքների որոշ տեսակների գերսպառում, որը նույնպես ռացիոնալ չէ, իսկ երբեմն էլ նույնիսկ վնասակար է։

Մարդկանց առողջության և նրանց նորմալ կենսագործունեության պահպանման գլխավոր պայմաններից մեկը, անկասկած, ռացիոնալ սնունդն է։ Թերսնումը կամ չափից ավելի ուտելը հանգեցնում են մարդու առողջության խախտման, շատ հիվանդությունների առաջացման ու սաստկացման։ Մեր երկրում սովի ու թերսնման պրոբլեմը լուծված է մեկընդմիշտ և անվերադարձ։ Հիմա սպառնում է մի այլ վտանգ՝ ոչ ռացիոնալ սնունդը և չափից ավելի ուտելը։ Ըստ «Առողջապահության համաշխարհային կազմակերպության խրոնիկա» ամսագրի վկայության, աշխարհում ավելորդ սննդից և չափից ավելի շատ ուտելուց տառապում են 100 միլիոն մարդ։ Առատորեն սնվելը գլխավորապես յուղոտ, քաղցր սննդամթերքների, թխվածքեղենի չափից ավելի օգտագործումը գիրացման, ավելորդ քաշի առաջացման պատճառ են դառնում, որի հետևանքով ամենից առաջ խախտվում է սրտանոթային համակարգի գործունեությունը, առաջանում են ծանր խանգարումներ և այնպիսի հիվանդություններ, ինչպիսիք են չարորակ գոյացումները, սրտամկանի ինֆարկտը, սակավարյունությունը, հիպերտոնիան, շաքարախտը։

Մեր հանրապետությունում ռացիոնալ սննդի կազմակերպումն անհետաձգելի խնդիր է դարձել, քանի որ տարբեր սննդամթերքների (օրինակ, կենդանական ու բուսական յուղի, մսի և ձկնամթերքների) սպառման մեջ կան զգալի անհամամասնություններ, նկատվում է դրանց հետագա խորացման միտում։ Դա խոչընդոտում է ռացիոնալ սննդի գիտականորեն հիմնավորված նորմաներին մերձենալուն։

Հանրապետությունում առավել արժեքավոր սննդամթերքների սպառումն



զգալիորեն ցածր է ռացիոնալ նորմաներով հանձնարարվող մակարդակից։ Ինչպես, օրինակ, ձկնամթերքները և բուսական յուղը։ Մինչդեռ կարտոֆիլի ու հացամթերքների սպառման մակարդակը բարձր է։ Հենց այդ հանգամանքն էլ սահմանում է սպառման ռացիոնալացման հիմնական ուղղությունները։

Պետք է նշել, որ ռացիոնալ սպառման մշակված և ընդունված նորմաները երբեմն չեն համապատասխանում իրականությանը։ Դա նշանակում է, որ պահանջմունքների մասին սխալ պատկերացումներ են ձևավորվել, և որ այդ նորմաները պետք է ճշգրտվեն ռեալ կերպով գոյացող առաջարկի հիման վրա։ Օրինակ, 15 տարի առաջ ենթադրում էին, թե բնակչության մեկ շնչի համար սպառման տարեկան ռացիոնալ նորման պետք է գործվածքների գծով կազմի 58 քառ. մ, տրիկոտաժե իրերինը՝ 8,25 հատ։ Ներկայումս հանձնարարվում է համապատասխանաբար՝ 45,5 քառ. մ գործվածքներ և 12,8 հատ տրիկոտաժե իրեր։ Կյանքը ցույց տվեց, որ մարդիկ ավելի ու ավելի մեծ չափով գերապատվությունը տալիս են տրիկոտաժե իրերին։ Դրա հետևանքով հարկ եղավ վերանայել այդ ապրանքների օգտագործման ռացիոնալ նորմաները։

Անշուշտ, սա բնավ չի նշանակում, որ գիտական հիմնարկների մշակած ռացիոնալ նորմաները պետք է մշտապես կախված լինեն բնակչության ռեալ առաջարկից։ Տվյալ դեպքում անհնար կլիներ պահանջմունքները ձևավորելու, պետության կողմից բնակչության սպառումը կառավարելու խնդրի իրականացումը։ Հետևաբար, կարող էր այնպես ստացվել, որ, օրինակ, ռեալ կերպով գոյություն ունեցող ալկոհոլային խմիչքների առաջարկի պայմաններում դրանց համար նույնպես սպառման համապատասխան նորմա սահմանվեր։ Սակայն հանրահայտ է, որ դա չի կարող դասվել խելամիտ այն պահանջմունքների շարքը, որոնց բավարարումը տանում է դեպի անհատի զարգացում ու կատարելագործում, ինչպես նաև համապատասխանում է հասարակության շահերին։ Պետք է նշել, որ ալկոհոլային խմիչքների սպառումը սահմանափակելու ուղղությամբ ձեռնարկված միջոցներն արդեն շոշափելի արդյունք տալիս են։

Նորմաներ մշակողները չեն կարող հավակնել, որ դրանք նույնականորեն կարտացոլեն բնակչության սպառման ապագա կառուցվածքը՝ որպես սոսկ մոտավոր կողմնորոշիչներ։

Սննդամթերքների և ոչ պարենային ապրանքների սպառման միջև տարբերություն կա։ Սննդամթերքների սպառումը միանվագ գործողություն է, որի ավարտից հետո դրանք՝ որպես սպառողական արժեքներ, դադարում են գոյություն ունենալուց։ Ոչ պարենային ապրանքները որոշակի ժամանակահատվածում գտնվում են սպառման պրոցեսում, որի ընթացքում դրանք ֆիզիկապես ու բարոյապես մաշվում են։ Դրանցից մեկը կարող է ծառայել համեմատաբար ոչ մեծ ժամանակամիջոցում (օրինակ, հագուստը, կոշիկը և այլն), մյուսները իրենց սպառողական արժեքը պահպանում են բավական երկար ժամանակ (օրինակ, ամանեղենը, կահույքը, տնտեսական գործածության իրերը, երկարատև օգտագործման ապրանքները և այլն)։ Ոչ պարենային ապրանքների սպառման այդ առանձնահատկությանը համապատասխան, դրանք իրենց ծառայության ժամկետի ընթացքում որպես սպառողական ֆոնդ են հանդես գալիս։ Հենց դրա չափերով ու կազմով էլ սահմանվում է բնակչության համապատասխան պահանջմունքների բավարարման մակարդակը։ Այդ ֆոնդի մի մասն սպառվում, մաշվում է տարվա ընթացքում և ենթակա է փոխարինման։ Սպառման ֆոնդի ծախսվող մասի սահմանումը հնարավորություն է տալիս որոշել արտադրության և այդ առարկաների ձեռքբերման անհրաժեշտ ծավալները։ Բայց ծախսվող մասի սահմանումը հնարավորություն է ընձեռում չափել բավարարվող պահանջմունքների ծավալը։

Ժողովրդի կենսամակարդակի, նրա պահանջմունքների բավարարման աստիճանի բնութագրման համար անհրաժեշտ է տեղեկություններ ունենալ առկա ամբողջ կենցաղային գույքի մասին, որն ընտանիքը ունի որպես ռեալ սպառողական ֆոնդ։ Օրինակ, ընտանիքը կարող է մեկ տարում վերարկու, հեռուստացույց, կահույք և այլ ապրանքներ չգնել՝ այդ առարկաներն ունենալով նախորդ տարիների գնումների շնորհիվ։ Դրա հետ մեկտեղ, պետք է իմանալ, թե այդ ֆոնդի ո՞ր մասն է մաշվում մեկ տարում և տեղի ունենո՞ւմ է, արդյոք, սպառողական ֆոնդի կուտակում։

Սպառման առարկաների տարեկան մաշվածքը կախում ունի դրանց ծա-

ռայության ժամկետներից։ Մաշվածքը հավասար է սպառողական ֆոնդին՝ բաժանած ծառայության ժամկետի վրա։ Այդ ֆոնդի կուտակումը տեղի է ունենում այն ժամանակ, երբ սպառման առարկաների տարեկան գնումը գերազանցում է հենց տվյալ ժամանակամիջոցում դրանց շարքից դուրս գալուն։ Սակայն այդպիսի համեմատություն պետք է անել համադրելի գներով, որովհետև դրանց փոփոխությունը կարող է խեղաթյուրել իրավիճակը։

Սպառման ֆոնդի սահմանումը պահանջում է հաշվի առնել բազմաթիվ գործոններ։ Օրինակ, հագուստի ու կոշիկի սպառման ֆոնդի առավել արդյունավետ կառուցվածք սահմանելիս նպատակահարմար է հաշվի առնել միմյանց փոխարինող տարբեր նյութերի համեմատական խնայողաբերությունը։ Կարող է հարց ծագել, օրինակ, թե ի՞նչն է ավելի խնայողաբեր՝ ամուր, բայց թանկարժեք ապրա՞նքը՝ գործածության երկար ժամկետով, թե՞ ավելի էժան, պակաս դիմացկուն ապրանքը, որը գործածության կարճ ժամկետ ունի, և որը հաճախ պետք է նորոգել։

Սպառման ֆոնդի մեջ, բացի անմիջականորեն օգտագործվող առարկաներից, մտնում են նաև այնպիսիները, որոնք ապահովում են այդ ֆոնդի բազմազանությունը՝ մարդու գործունեության տարբեր ձևերին համապատասխան (ձեռնարկությունում կամ հիմնարկում աշխատելը, թատրոն, կինո և կուլտուրական այլ հաստատություններ հաճախելը, տնային պարապմունքները, սպորտը, տուրիզմը, հանգիստը և այլն)։ Հագուստի բազմազանությունը որոշվում է նաև սեզոնայնությամբ. հագուստի և կոշիկի մի մասը կարող է տրված լինել մաքրման, նորոգման, հետևաբար՝ հարկավոր են նաև պահեստի իրեր։

Հագուստի, կոշիկի և կենցաղային իրերի նկատմամբ պահանջմունքները էականորեն տարբեր են տարբեր տարիքի մարդկանց, տղամարդկանց, կանանց, երկրի տարբեր շրջաններում ու կլիմայական գոտիներում ապրողների համար։ Տարբերություններն անխուսափելի են նաև քաղաքի ու գյուղի բնակչության, առանձին պրոֆեսիոնալ խմբերի համար։

Սպառման ռացիոնալ նորմաների և նորմատիվների ապահովվածությունը պետք է ձեռք բերվի տարբեր մեթոդներով, որոնք համալրում են միմյանց։ Այդպիսի կոմպլեքսային մոտեցումը հնարավորություն է տալիս ավելի հուսալի դարձնել հեռանկարային կարգով ընտրված ապահովվածության հիմնավորվածությունը։

Ռացիոնալ նորմաների հեռանկարայնությունը չի նշանակում դրանց կապակցում կոնկրետ տարվան։ Դրա հետ միասին այդ նորմաները չեն կարող գոյություն ունենալ ժամանակից դուրս, և սահմանափակված լինել որոշակի կոնկրետ ժամանակաշրջանով։ Կոնկրետ ժամանակամիջոցով սահմանափակումը կապված է ընդհանրապես ապագայի, մասնավորապես գիտատեխնիկական առաջադիմության և նրա արդյունքների սահմանափակվածության հետ։

Սպառման հեռանկարային ռացիոնալ նորմաները և ապահովվածության նորմատիվներն ընդունելով որպես որոշակի քանակական սահմանագծեր, որոնց ձգտում է հասնել սպառումը, պետք է նկատի ունենալ, որ այդ սահմանագծերը միանգամայն պայմանական են, որովհետև դրանք որոշվում են մարդու պահանջմունքների զարգացման մասին արդի գիտական պատկերացումների հիման վրա։ Հեռավոր հեռանկարի համար սպառման զարգացումն ստույգ կանխատեսելու դժվարություններն ամենից առաջ կապված են արտադրողական ուժերի լուրջ փոփոխությունների հետ, որոնք տեղի են ունենում գիտատեխնիկական առաջադիմության ազդեցությամբ։

Վերամշակող արդյունաբերության զարգացումն արագացնելու հարցերին նվիրված՝ ՍՄԿԿ Կենտկոմի վերջերս տեղի ունեցած խորհրդակցությունում նշվեց, որ առանց սովետական մարդկանց կենսական պահանջմունքների բավարարման՝ անհնար է ռեալ կերպով և լիովին խթանել նրանց նախաձեռնությունն ու շահագրգռվածությունը պետական խնդիրների լուծման գործում, էական տեղաշարժերի հասնել երկրի սոցիալ-տնտեսական զարգացման արագացման ասպարեզում։

Հենց դրան են նպատակամղված սպառման ռացիոնալ նորմաների մշակման մեթոդաբանությունն ու նրա ողջ համակարգը։

---

# ՌԵԳԻՈՆԱԼ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԿԱՌԱՎԱՐՈՒՄ՝ ՎԵՐԱԿԱՌՈՒՑՄԱՆ ԽՆԴԻՐՆԵՐԸ

ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ կառավարման ողջ համակարգի արմատական վերակառուցման պայմաններում հատկապես հրատապ է դառնում արագացման ռեգիոնալ ռեզերվների իրացմանն ուղղված խոշոր սոցիալ-տնտեսական միջոցառումների կենսագործումը։ Այս խնդրի կարևորությունը պայմանավորված է ռեգիոնների կառավարման մեջ հանրապետական և տեղական մարմինների դերի մեծացմամբ, որն իր արտացոլումն է գտել ՍՄԿԿ XXVII համագումարի, Կենտկոմի 1987 թ. հունիսյան պլենումի փաստաթղթերի, սոցիալ-տնտեսական զարգացման գործում ժողովրդական դեպուտատների սովետների դերի հետագա բարձրացման մասին ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության և Մինիստրների խորհրդի որոշման մեջ։

Երկրի ժողովրդական տնտեսության պլանավորման և կառավարման համակարգի վերակառուցումը պայմանավորված է հիմնական ստրատեգիական խնդիրների իրացմամբ՝ կենտրոնացված ղեկավարությունը զուգակցելով ձեռնարկությունների ինքնուրույնության, շահագրգռվածության և պատասխանատվության բարձրացման հետ։ Միաժամանակ դա անցում է ղեկավարման տնտեսական մեթոդներին, տնտեսության ճյուղային և տարածքային կառավարման օպտիմալ համադրմանը։

Ժողովրդական տնտեսության կառավարման համակարգի վերակառուցման նշված ուղղություններն անմիջականորեն կապված են ռեգիոնալ զարգացման խնդիրների հետ։ Այս առիթով հարց է առաջանում. ինչպիսի՞ն են այդ պահանջներին համապատասխան տնտեսական հարաբերությունները և նրանցից բխող մեխանիզմը, որոնք նպաստում են երկրի միասնական ժողովրդատնտեսական համալիրում ռեգիոնալ ավանդի աճին։

Նախ՝ կառավարման օբյեկտի մասին։ Օրինաչափ է թվում ռեգիոնի դիտարկումը ոչ թե որպես ժողովրդական տնտեսության առանձնացված բաղադրամաս, ինչպես որ հաճախ մեկնաբանվում է գրականության մեջ, և որի հետևանքով ռեգիոնները փաստորեն նույնացվում են տերիտորիալ-արտադրական համալիրների հետ, այլ որպես ամբողջական, հարաբերականորեն ինքնուրույն սոցիալ-տնտեսական գոյացություն։

Ռեգիոնի գործունեության արդյունավետությունը պայմանավորված է կառավարման կենտրոնացված և ապակենտրոնացված մեթոդների համամասնական օգտագործման բարդ խնդիրների լուծմամբ։ Սոցիալիստական էկոնոմիկայի կառավարման կարևորագույն մեթոդաբանական սկզբունքի՝ դեմոկրատական ցենտրալիզմի, հաջող կենսագործումը պահանջում է ժողովրդական տնտեսության կառավարման ճյուղային և տերիտորիալ մոտեցումների օպտիմալ զուգակցություն։ Ինչպես հայտնի է, ամբողջ ժողովրդական տնտեսության և նրա առանձին ենթահամակարգերի պլանավորումն ու կառավարումն իրենցից ներկայացնում են համապատասխանաբար կենտրոնացված և ապակենտրոնացված կառավարման սկզբունքներ։ Այս ուղղություններից յուրաքանչյուրի թուլացումը հղի է անցանկալի հետևանքներով։ Ճյուղային ինքնակառավարման ուղղությամբ կատարվող ռեալ քայլերը պետք է համապատասխանորեն զուգակցվեն կառավարման կենտրոնացված սկզբունքի, ինչպես նաև տերիտորիալ ինքնակառավարման հետ։

Նշված համակարգի կատարելագործման տրվյալ ասպեկտները հատկապես կարևորվեցին ՍՄԿԿ Կենտկոմի 1987 թ. հունիսյան պլենումում։ Ժողովրդական տնտեսության կառավարման համակարգի վերակառուցումը ներառում է ռեգիոնալ պլանավորման արմատական կատարելագործման, ճյուղային և տերիտորիալ կառավարման օպտիմալ զուգակցման մի շարք խնդիրներ։ Վերակառուցման վերոհիշյալ ուղղությունների իրացումը ենթադրում է անցում ղեկավարման վարչական մեթոդներից առավելապես տնտեսական մեթոդներին, ռեգիոնալ զարգացման կառավարման տնտեսական կառուցվածքի ուժեղացում՝ հաշվի առնելով նրա գործունեության բնորոշ առանձնահատկությունները, ճյուղերի և ռեգիոնի շահերի համաձայնեցվածություն, պլանի սոցիալական հաշվեկշռվածություն։

Ռեգիոնի, որպես կառավարման օբյեկտի, առաջին բնորոշ առանձնահատկությունը, որը պայմանավորում է նրա բարդությունը, կապված է տնտեսության հստակ արտահայտված

զանազան կազմակերպություններում, հանդիպումներ ունենում իմ ընտրողների հետ, նրանց պատվիրանները կատարելու նպատակով լինում քաղաքային ու շրջանային սովետներում, մինիստրություններում ու գերատեսչություններում: Հարկ եղած դեպքում զբաղվում եմ նաև մեր միավորման շահերից բխող հարցերի լուծմամբ: Եվ գոհունակությամբ պետք է ասեմ, որ բարձրացրածս հարցերը միշտ արժանացել են ուշադրության և բավարար լուծում ստացել:

Օգտվելով ամսագրում հանդես գալու առիթից՝ կուզեի հայտնել մի քանի նկատառումներ, որոնք, իմ կարծիքով, բխում են վերակառուցման ոգուց և պահանջներից:

Առաջին հարցը վերաբերում է ընտրովի մարմիններում բանվոր ակտիվիստների ուժերի օգտագործմանը: Ցավոք, մենք ավելի շատ մտահոգվում ենք այդ մարմինների կազմում բանվորների տոկոսային համամասնության պահպանմամբ, քան նրանց ուժերի արդյունավետ օգտագործմամբ: Ընտրովի մարմինները պետք է ստեղծեն բոլոր պայմանները, դրսևորեն սրտացավ շահագրգռություն, որպեսզի նրանք կարողանան հանդես բերել նախաձեռնություն, զանազան խնդիրներ լուծելու կարողություն: Ես ՍՍՀՄ Գերագույն սովետի Ազգությունների սովետի բյուջետային հանձնաժողովի անդամ եմ: Եվ չեմ կարող չնկատել, թե այնտեղ ինչպիսի բանիմացությամբ են օգտագործում իմ համեստ կարողությունները: Իսկ չի՞ կարելի այդպես վարվել նաև քաղաքային ու շրջանային, գյուղական և ավանային սովետների դեպուտատների հետ: Ցավոք, վերակառուցման պայմաններում էլ նրանց զգալի մասը պասսիվ է, գրեթե ոչինչ չի անում իրեն վերապահված իրավունքներից օգտվելու և պարտականությունները կատարելու համար:

Եվս մի հարց, որը հուզում է մեր կոլեկտիվին: Մենք հաճախ ենք գործարանը համեմատում ընտանիքի հետ և դա, իրոք, այդպես է: Բայց ահա ընտանիքը կարող է իր խնայողությունների հաշվին ձեռք բերել մի նոր գույք, հինն էլ տնօրինել իր հայեցողությամբ: Իսկ կարո՞ղ է այդպես վարվել գործարան-ընտանիքը: Պարզվում է, որ ամենևին էլ ոչ միշտ: Օրինակ՝ բնակարանի հարցը: Ձեռնարկությունը խնայած միջոցներով տուն է կառուցում և տրամադրում իր կոլեկտիվի անդամներին: Հետագայում նրանցից ոմանք բնակարանային բարելավման իրավունքով նոր բնակարան են ստանում նույն ձեռնարկության խնայած միջոցներով կառուցված նոր շենքում: Իսկ ինչու՞ նման դեպքում հին ազատված բնակարանը թողնվում է ոչ թե գործարանին, այլ հանձնվում է համապատասխան շրջսովետի գործկոմի տնօրինությանը: Կարծում եմ, որ դա լուրջ սխալ է և ձեռնարկություններին վերապահված լայն իրավունքների պայմաններում պետք է անպայմանորեն շտկվի:

Կուսակցության առաջադրած վերակառուցման կուրսը վերաբերում է հասարակական և արտադրական կյանքի բոլոր ոլորտներին, յուրաքանչյուր աշխատողի: Մենք՝ բանվորներս, ակտիվորեն ներգրավվել ենք վերակառուցման գործին և կանենք ամեն ինչ այն հաջողությամբ պսակելու համար:

**Է. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ,**
**«Էլեկտրասարք» արտադրամիավորման բրիգադավար, ՍՍՀՄ Գերագույն սովետի դեպուտատ, ՀԿԿ Երևանի քաղկոմի բյուրոյի անդամ**

# ԶԱՐԳԱՑՆԵԼ ԺՈՂՈՎՐԴԻ ԻՆՔՆԱԿԱՌԱՎԱՐՈՒՄԸ

ՄԵԾ ՀՈԿՏԵՄԲԵՐԻ 70-ԱՄՅԱԿԻ տոնակատարության օրերին ամբողջ համաշխարհային հասարակայնության ուշադրությունը բևեռված էր մեր երկրին: Եվ դա հասկանալի է: Չէ՛ որ Հոկտեմբերի հոբելյանը իրոք մեզ պարտավորեցնում է նորից ու նորից իմաստավորել, ըմբռնել այն պատմական ուղու նշանակությունը, որ անցել է սովետական հասարակությունը իր զարգացման 70 տարում:

Այդ օրերը իմ հիշողության մեջ երկար կմնան և այն պատճառով, որ ինձ բախտ վիճակվեց մեր հանրապետության պատվիրակության կազմում ներկա գտնվել Մոսկվայի տոնակատարություններին, մասնակցել հոբելյանին նվիրված հանդիսավոր նիստին: Ինչ խոսք, մեծ են իմ տպավորությունները: Բայց ամենագլխավորն ու առավել տպավորիչը կապված է ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Մ. Ս. Գորբաչովի «Հոկտեմբերը և վերակառուցումը. հեղափոխությունը շարունակվում է» զեկուցման հետ, որտեղ տրված է մեր երկրում սոցիալիստական շինարարության պատմության խոր ու համակողմանի վերլուծությունը, Հոկտեմբերի գաղափարների հետ կուսակցության այժմյան ներքին ու արտաքին քաղաքականության անխզելի կապը:

Որպես գյուղսովետի գործկոմի նախագահ ու ՍՍՀՄ Գերագույն սովետի դեպուտատ՝ իմ սրտին առանձնապես մոտ են զեկուցման այն տողերը, որտեղ խոսվում է ինքնակառավարումը իբրև ժողովրդի իշխանություն զարգացնելու մասին: Այդ պրոցեսը, ինչպես նշեց Մ. Ս. Գորբաչովը, «պետք է տեղի ունենա նախ և առաջ սովետների միջոցով, որոնք պետք է, կուսակցության մտահղացումների համաձայն, լիովին արդարացնեն լիազոր և որոշող մարմինների իրենց դերը»:

Բռնելով ժամանակի քննությունը, սովետները ապացուցել են իրենց կենսունակությունը, մասսաներին միավորելու և մոբիլիզացնելու վիթխարի հնարավորությունները: Բայց պետք է խոստովանել, որ եղել են ժամանակներ, երբ այդ հնարավորությունները անբավարար են օգտագործվել: Ես երևի շատ դեպուտատների կարծիքը հայտնած կլինեմ, եթե ասեմ, որ անցած տասնամյակի լճացման երևույթներն ու բացասական միտումները, որոնց մասին խոսվել է կուսակցության XXVII համագումարում և Կենտկոմի հաջորդ պլենումներում, նկատվել են նաև սովետների աշխատանքում: Իշխանության այդ մարմինները, հատկապես տեղերում, հաճախ չեն գտնվել իրենց կոչման բարձրության վրա, տեսադաշտից դուրս են թողել սոցիալ-տնտեսական հրատապ հարցերի լուծումը:

Պատահում էր, ասենք հիմա էլ հաճախ այդպես է լինում, երբ մարդիկ ճանապարհի ասֆալտապատման, գյուղի փողոցների էլեկտրալուսավորման, մանկապարտեզի կառուցման, ակումբի նորոգման և նման այլ հարցերով դիմում են կոլտնտեսության վարչությանը կամ սովխոզի դիրեկցիային: Մի կողմից դա, թերևս, հասկանալի է՝ տնտեսությունները շատ ավելի մեծ միջոցներ ունեն: Բայց չէ՞ որ, մյուս կողմից էլ, դրանք գյուղական սովետի իրավասության հարցեր են, ավելին, նման հոգսերը նրանց ուղղակի պարտականությունն է: Եվ հենց այն բանով, թե ինչպես են կատարվում ընտրողների պատվիրանները, պայմանավորված է ոչ միայն յուրաքանչյուր դեպուտատի, այլև ամբողջությամբ վերցրած տեղական սովետի նկատմամբ վստահության, նրա հեղինակության աստիճանը:

Հասարակության զարգացման ներկա շրջադարձային փուլում աշխատանքի արմատական կատարելագործումը մեզ համար ամենից առաջ նշանակում

# ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅՈՒՆԸ ՊԱՇՏՊԱՆՎՈՒՄ Է

## ՊԵՏԱԿԱՆ ԱՆՎՏԱՆԳՈՒԹՅԱՆ ՄԱՐՄԻՆՆԵՐԻ 70-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ

**Մ. ՅՈՒԶԲԱՇՅԱՆ**
**ՀԿԿ Կենտկոմի բյուրոյի անդամության թեկնածու, Հայկական ՍՍՀ պետանվտանգության կոմիտեի նախագահ, գեներալ-լեյտենանտ**

ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ մեծ հեղափոխությունը համաշխարհային քաղաքակրթության մեջ նոր դարագլուխ բացեց և, արմատապես փոխելով մոլորակի տեսքը, ընդմիշտ մտավ պատմության մեջ։ Հոկտեմբերը, ընկեր Մ. Ս. Գորբաչովի խոսքերով ասած, «մարդկության հիրավի «աստեղային ժամն է», նրա այգաբացի արշալույսը»։ Մեր երկիրը, ողջ առաջադեմ մարդկությունը նշեց XX դարի այդ առավել աչքի ընկնող իրադարձության 70-ամյա տարելիցը։

Լայնորեն հայտնի են Վ. Ի. Լենինի խոսքերը, թե ամեն մի հեղափոխություն միայն այն ժամանակ ինչ-որ բան արժե, եթե կարողանում է պաշտպանվել։ Եվ սովետական ժողովուրդը ըստ էության իր ամբողջ պատմության ընթացքում մշտապես ապացուցել է, որ ինքը կարողանում է պաշտպանել հեղափոխությունը, հետևապես և իրեն։

Ստեղծագործորեն զարգացնելով մարքսիզմը, Վ. Ի. Լենինը այն հետևությունն արեց, թե հեղափոխության նվաճումները պաշտպանելու համար պահանջվում է պրոլետարիատի դիկտատուրայի հատուկ մարմին։ 1917 թ. դեկտեմբերի 20-ին ստեղծվեց այդ մարմինը։ Դա Ժողովրդական կոմիսարների խորհրդին առընթեր՝ հակահեղափոխության ու սաբոտաժի դեմ պայքարի Համառուսաստանյան արտակարգ հանձնաժողովն էր։

ՎՉԿ, չեկիստներ՝ այս բառերն իսկույն ևեթ ոմանց ատելությունը, չարությունն ու սարսափը հարուցեցին, մյուսների մոտ, իսկ դրանք ճնշող մեծամասնություն էին, շնորհապարտություն ու երախտագիտություն, հեղափոխության պաշտպանությանը անձամբ մասնակցելու ձգտում առաջ բերեցին։

Սովետների համառուսաստանյան IX համագումարում, խոսելով ՎՉԿ-ի դերի մասին, Վ. Ի. Լենինը 1921 թ. դեկտեմբերի 23-ին ասաց. «Ռուսաստանյան և օտարերկրյա պարոն կապիտալիստներ։ Մենք գիտենք, որ դուք այդ հիմնարկը սիրել չեք կարող։ Դե՛, իհա՛րկե։ Նա կարողանում էր ձեր բանսարկությունները և ձեր որոգայթները այնպես հետ մղել, ինչպես ոչ ոք, այն պարագաներում, երբ դուք մեզ խեղդում էիք, երբ դուք մեզ շրջապատում էիք արշավանքներով...»։

ՎՉԿ-ի նախագահ նշանակվեց բոցաշունչ հեղափոխական, բոլշևիկ Ֆ. Է. Ձերժինսկին։ Այդ ընտրությունը պատահական չէր. Վ. Ի. Լենինը գտնում էր, որ ՎՉԿ-ի գլուխ պետք է կանգնած լինի հեղափոխական-յակոբինյանը, վճռական, հետևողական, հեղափոխության թշնամիների նկատմամբ անհան-



դուրժող, բյուրեղյա մաքրությամբ մարդ։ Հենց այդպիսի հատկանիշներով էր օժտված պրոֆեսիոնալ հեղափոխական, Վ. Ի. Լենինի հավատարիմ զինակից Ֆ. Է. Ձերժինսկին։

Ստեղծման պահից իսկ ՎՉԿ-ն պրոլետարիատի դիկտատուրայի ձեռքին դարձավ հեղափոխության նվաճումների պաշտպանության զենք։ Արտակարգ հանձնաժողովի մարմինները աշխատում էին կուսակցության անմիջական ղեկավարության ու հսկողության ներքո՝ հենվելով աշխատավորական լայն զանգվածների վրա, խստագույնս պահպանելով սոցիալիստական օրինականությունը։

Վ. Ի. Լենինը մեծ ուշադրություն էր նվիրում սոցիալիստական շինարարության տարբեր փուլերում ՎՉԿ-ի մարմինների աշխատանքի կատարելագործմանը։ Մշտապես զբաղված լինելով հանդերձ, Լենինը երկու անգամ հանդիպում է ունեցել չեկիստների հետ։ Առաջին անգամ Հոկտեմբերի տարեդարձին՝ 1918 թ. նոյեմբերի 7-ին, երբ վիրավորվելուց հետո դեռ ինչպես հարկն է չէր ապաքինվել. հանդես գալով Համառուսաստանյան արտակարգ հանձնաժողովի աշխատակիցների միտինգ-համերգում, նա նշեց, որ ՉԿ-ն անմիջականորեն իրագործում է պրոլետարիատի դիկտատուրան, և այդ տեսակետից նրա դերն անգնահատելի է։ Իսկ խոսելով չեկիստներին ներկայացվող պահանջների մասին, նա շեշտել է՝ «... վճռականություն, արագություն և, որ գլխավորն է՝ հավատարմություն»։

Երկրորդ և վերջին անգամ Վ. Ի. Լենինը չեկիստների հետ հանդիպել է 1920 թ. փետրվարի 6-ին, արտակարգ հանձնաժողովների համառուսաստանյան IV կոնֆերանսի եզրափակիչ նիստում, որտեղ նրանց դիմել է կոչով՝ միշտ «... զգաստ լինել..., լիակատար մարտունակություն պահպանել...»։

Կուսակցությունը ՎՉԿ-ում աշխատանքի ուղարկեց ընդհատակյա, կոնսպիրատիվ գործունեության մեծ փորձ ունեցող աննկուն պրոֆեսիոնալ հեղափոխականներ Վ. Ավանեսովին, Ա. Արտուզովին, Գ. Աթարբեկյանին, Դ. Եվսեևին, Մ. Կեդրովին, Ի. Քսենոֆոնտովին, Մ. Լացիսին, Վ. Մանցևին, Վ. Մենժինսկուն, Յա. Պետերսին, Վ. Ֆոմինին, Վ. Յակովլևին և ուրիշների։

Իմպերիալիստական արշավանք, քաղաքացիական պատերազմ, հակահեղափոխական ու բանդիտական ելույթներ, կուլակների խռովություն, սպիտակգվարդիական կազմակերպությունների քայքայիչ գործունեություն՝ ահա ոչ լրիվ թվարկումը այն գործոնների, որոնք ստեղծեցին այդ ժամանակի տագնապալի ու լարված իրավիճակը։

Կուսակցությունն արտաքին ու ներքին հակահեղափոխությունից հեղափոխությունը պաշտպանելու համար ոտքի հանեց ժողովրդին։ Կարմիր բանակի հետ միասին չեկիստները ջախջախեցին ամենատարբեր երանգների ընդհատակյա հակահեղափոխական կազմակերպություններին, լրտեսական, դիվերսիոն-տեռորիստական ու բանդիտական խմբավորումներին։ Ճնշեցին կուլակային խռովությունը։

Ինտերվենցիայի ջախջախումը, ինչպես և պետք էր սպասել, իմպերիալիստներին հետ չպահեց սովետական իշխանության դեմ պայքարի պլաններից։ Նրանք անցան ավելի նենգ ու նրբին եղանակների, փորձելով իրենց քայքայիչ նպատակների համար օգտագործել դասակարգային խորթ տարրերին, ինչպես նաև ընդհատակ անցած հակասովետական քաղաքական կուսակցություններին ու բուրժուական նացիոնալիստներին։ Կապիտալիստական երկրների հատուկ ծառայությունների տրամադրության տակ անցան նաև արևմուտք փախած վտարանդիները, որոնք հարյուր հազարներով էին հաշվվում։

Նոր պայմաններին համապատասխան՝ փոփոխվեցին նաև չեկիստների գործունեության տակտիկան ու եղանակները։ ՎՉԿ-ի մարմինները վերակառուցվեցին ՊՔՎ-ի (Պետական քաղաքական վարչություն), իսկ ավելի ուշ՝ ՄՊՔՎ-ի (Միացյալ պետական քաղաքական վարչություն)։ Նրանց գործունեությունն իր սուր ծայրով ավելի ու ավելի էր ուղղվում դեպի դուրս, որտեղ նյութվում էին ամեն կարգի դավադրությունները և մշակվում վնասարարական-դիվերսիոն գործողությունների պլանները։

իրենց կուսակցական ու պաշտոնեական պարտքը։ Նրանցից շատերը առհավետ մնացին երախտագետ սերունդների հիշողության մեջ։ Դրանցից են Արամ Աբգարյանը, Արշակ Սարգսյանը, Ստեփան Ավագովը, Հովսեփ Բաբայանը, Գարեգին Աբգարովը, Իշխան Սայադյանը, Հակոբ Սլկունին, Հարություն Սուքիասյանը, Ալեքսանդր Մարտիրոսյանը, Սուրեն Էգիլյանը, Շավարշ Գալստյանը, Սեդրակ Վարդանյանը, Սուրեն Մովսիսյանը և շատ ուրիշներ։

Հայաստանի պետանվտանգության մարմինների հետագա պատմությունը համընկնում է պետանվտանգության կոմիտեի մյուս տերիտորիալ մարմինների պատմությանը։ Հանրապետության չեկիստները մարտնչել են պատերազմի դաշտերում, մասնակցել պարտիզանական շարժումներին։

Ներկայումս Հայաստանի պետանվտանգության կոմիտեի կոլեկտիվը սովետական չեկիստների ջոկատներից մեկը, ինչպես և ամբողջ երկիրը, գտնըվում է վերակառուցման պրոցեսում։

Ինչպես նախապատերազմյան, այնպես էլ պատերազմյան ու հետպատերազմյան տարիներին սովետական չեկիստները հաջողությամբ կատարել են մեր սոցիալիստական հայրենիքի հուսալի անվտանգությունն ապահովելու նպատակով իրենց առջև դրված խնդիրները։ Այն մասին, թե չեկիստները ինչպես են կատարում իրենց պարտքը, կուսակցության XXVII համագումարին ՍՄԿԿ Կենտկոմի տված Քաղաքական զեկուցման մեջ ասված է, որ պետական անվտանգության մարմինները «կուսակցության ղեկավարությամբ, խստիվ կիրառելով սովետական օրենքները, մեծ աշխատանք են տանում թշնամական դավերը մերկացնելու, ամեն կարգի քայքայիչ գործողությունները խափանելու, մեր հայրենիքի սրբազան սահմանները պահպանելու ուղղությամբ»։

ՍՄԿԿ Կենտկոմի 1987 թ. հունվարյան պլենումում ընկեր Մ. Ս. Գորբաչովը իր զեկուցման մեջ ասաց. «Հայրենիքի շահերի պաշտպանության դիրքերում աչալրջորեն կանգնած են պետական անվտանգության մարմինները, որոնք ունեն գաղափարապես կոփված, կուսակցությանն ու ժողովրդին նվիրված պրոֆեսիոնալ առումով պատրաստված կադրեր»։ Նման գնահատականը շատ բանով է պարտավորեցնում, և չեկիստները դա հրաշալի գիտակցում են։

Անհրաժեշտ է նշել, որ երբ կոպիտ կերպով խախտվեցին պետանվտանգության մարմինների գործունեության լենինյան նորմերը, դա անմիջապես իր հետ առաջ բերեց ծանր հետևանքեր, անմեղ մարդկանց ռեպրեսիաներ։ Նման միտումներ, որոնք արտահայտվում էին պետանվտանգության մարմինները կուսակցության հսկողությունից դուրս հանելու փորձերի մեջ, դրսևորվեցին 30-ական թվականներին։

Սակայն սխալ կլիներ կարծել, թե սոցիալիստական օրինականության խախտումները համընդհանուր բնույթ էին կրում։ Ինչպես հայտարարեց ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամ, պետանվտանգության կոմիտեի նախագահ Վ. Մ. Չեբրիկովը, «... այն ծանր տարիներին, շատ չեկիստներ հանդես էին գալիս օրինականության խախտումների դեմ։ Բավական շատ չեկիստների, այդ թվում նրանց, ովքեր սկսել էին աշխատել Ֆ. Է. Ձերժինսկու հետ, բաժին ընկավ անմեղ տուժած սովետական մարդկանց ճակատագիրը»։

Լենինյան սկզբունքների թույլ տրված խախտումները վճռականապես դատապարտվեցին կուսակցության կողմից, որը հուսալի երաշխիքներ ստեղծեց պետանվտանգության մարմիններում օրինականության անշեղ պահպանման համար։

Այսօր չեկիստները գտնում են, որ վերակառուցման գործը լիովին վերաբերում է իրենց այն իմաստով, որ, մի կողմից, ամեն բան արվի մեր կյանքի բոլոր ոլորտների նորացմանը հաջողությամբ նպաստելու համար, մյուս կողմից՝ ծավալվող սոցիալիստական դեմոկրատիայի ու հրապարակայնության պայմաններում իրենց սեփական գործունեությունը վերակառուցելու և կատարելագործելու առումով։

Եթե պատկերավոր ասենք պետանվտանգության մարմինների աշխատանքի մասին, ապա կարելի է դա նաև այսպես արտահայտել. մի թևում կանգնած է հանրահայտ սահմանապահ Կարացուպան, իսկ մյուսում՝ ոչ պակաս հայտնի հետախույզ Աբելը։ Ահա թե ինչպիսին է պետանվտանգության մարմինների գործունեության ընդգրկումը։



Պետանվտանգության մարմիններում կադրային քաղաքականությունը ևս իրականացվում է կուսակցության ղեկավարության ներքո։ Ընդ որում ելակետը լենինյան այն միտքն է, որ «լավ կոմունիստը, միաժամանակ նաև լավ չեկիստ է»։ Իսկ դա նշանակում է, որ լավ չեկիստ կարող է լինել միայն լավ կոմունիստը։ Աննկուն մարդը, կուսակցության քաղաքական մարտիկը։ Պետանվտանգության մարմիններում աշխատելու համար թեկնածուների ընտրության գործում այս է վճռորոշ դիրքը։

Չեկիստները ժողովրդի հարազատ զավակն են։ Ահա թե ինչու մեր երկրի ամբողջ պատմության ընթացքում նրանք ժողովրդի հետ մասնակցել են սոցիալիզմի կառուցմանն ու նրա պաշտպանությանը։ Հայրենական մեծ պատերազմի ժամանակ ակտիվորեն գործում էր «ՍՄԵՐՇ» (смерть шпионам) ռազմական հակահետախուզությունը։ Չեկիստները սովետական բանակի թիկունքում որսում էին թշնամու գործակալ-լրտեսներին ու դիվերսանտներին, գործում էին բանակային մարտակարգերում, ինչպես նաև հակառակորդի զորքերի խոր թիկունքում՝ միայնակ կամ հատուկ խմբերի կազմում։

Ելնելով կուսակցության ցուցումներից, չեկիստներն այսօր իրենց գործունեության ընթացքում հաշվի են առնում այն իրողությունը, որ առավել ագրեսիվ իմպերիալիստական շրջանները չեն հրաժարվել համաշխարհային պատմության ընթացքը եթե ոչ շրջելու (իսկ դա հնարավոր չէ), ապա գոնե արգելակելու և, վերջին հաշվով, սոցիալիզմը վերացնելու փորձերից։

Այս առիթով ընկ. Մ. Ս. Գորբաչովը նշել է, որ քանի դեռ պատերազմի սպառնալիքը պահպանվում է, քանի դեռ սոցիալական ռևանշը մնում է իբրև Արևմուտքի ստրատեգիայի և ռազմամոլական ծրագրերի առանցք, մենք այսուհետ ևս ամեն անհրաժեշտ բան կանենք պաշտպանական հզորությունը այնպիսի մակարդակի վրա պահելու համար, որը բացառում է սոցիալիզմի նկատմամբ իմպերիալիզմի ռազմական գերազանցությունը։

Այստեղից էլ բխում են արդի փուլում պետանվտանգության մարմինների խնդիրները. հուսալիորեն ապահովել հասարակության և սովետական մարդկանց անվտանգությունը իմպերիալիստական պետությունների հատուկ ծառայությունների ամեն կարգի դավերից և մեր երկրում դեռևս գոյություն ունեցող այն անձանցից, որոնք հակապետական ու հակահասարակական արարքներ են կատարում։

Հաշվի առնելով, որ վերակառուցումը, մեր հասարակության համակողմանի նորացումը և սոցիալ-տնտեսական զարգացման արագացումը կհանգեցնեն սոցիալիզմի դիրքերի ամրապնդմանը, իմպերիալիստական պետությունների հատուկ ծառայությունները ավելի են ակտիվացրել իրենց քայքայիչ նկրտումները։ Իրենց թշնամական ծրագրերն իրագործելու նպատակով հակառակորդը փնտրում և երբեմն գտնում է թափթփուկների, որոնք դավաճանում են իրենց հայրենիքին և դառնում այդ ծառայությունների վարձու գործակալներ։ Մեր մամուլում հաղորդվել է դավաճաններ Պավլովի, Տոլկաչովի, Պետրովի, Սուսլովի (հեռուստատեսությամբ ներկայացվեց որպես «Տոլստյակ»), Իվանովսկու և այլոց մասին, որոնք զբաղվել են լրտեսական գործունեությամբ։ Մեր հանրապետությունում ևս եղել է օտարերկրյա հետախուզության հետ կապված մարդկանց մերկացման երկու դեպք։ Ազգանունները չեն հիշատակվում այն պատճառով, որ նրանք արդեն կրել են իրենց արժանի պատիժը և նրանց համար ստեղծված են սեփական մեղքը քավելու և արժանավոր քաղաքացիներ դառնալու բոլոր հնարավորությունները։

Հատուկ ծառայությունները և արտասահմանյան մյուս հակասովետական քայքայիչ կենտրոնները, այդ թվում և նրանց տնօրինությանը հանձնված դաշնակցական կենտրոնները, մեծ ջանքեր են գործադրում սովետական ժողովրդի եղբայրական բարեկամությունը խարխլելու համար։ Սովետական Միությունում, այդ թվում և մեր հանրապետությունում դեռևս կան նացիոնալիստական տրամադրությունների կրողներ, որոնց հայացքները հակասում են ժողովրդի շահերին։ Արտասահմանյան հակասովետական կենտրոնները դրանց դիտում են իբրև իրենց ռեզերվ։

1987 թ. ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունը, մարդասիրական նկատառումներով, որոշում ընդունեց հակասովետական ագիտացիայի ու պրո-

պագանդայի, ինչպես նաև սովետական պետական ու հասարակական կարգը արատավորող ակնհայտորեն կեղծ լուրեր տարածելու համար դատապարտված մի շարք անձանց ներման (բայց ոչ ռեաբիլիտացիայի) մասին։ Արևմտյան քայքայիչ կենտրոններն այդ մարդասիրական ակտը ջանում են օգտագործել իրենց հակասովետական նպատակներով։ Բացահայտելով հատուկ ծառայությունների հանցավոր մտադրությունները, ընկ. Վ. Մ. Չեբրիկովը նշեց, որ դրանք ձգտում են պատժի հետագա կրումից ազատված մարդկանց ամեն կերպ հրահրել օրենքի նոր խախտումների, այն հաշվով, որպեսզի մղեն դեմոնստրատիվ հակասովետական գործողությունների, որոնք կպահանջեին օրինապահ մարմինների միջամտությունը, և ապա հերթական աղմուկը բորբոքել իբր ՍՍՀՄ-ում տեղի ունեցող «մարդու իրավունքների խախտման մասին» ու դրանով փորձել ստվեր նետել դեմոկրատացման պրոցեսի վրա։

Պետք է նշել, որ ներում շնորհված անձանց մեջ ինչպես երկրում, այնպես էլ մեր հանրապետությունում գտնվեցին այնպիսիք, որոնք չգնահատեցին իրենց հանդեպ ցուցաբերված մարդասիրությունը և դրան պատասխանեցին «սև ապերախտությամբ»։ Նրանցից ոմանք կապեր են հաստատում Արևմուտքի՝ Սովետական Միության նկատմամբ թշնամական տրամադրված ներկայացուցիչների հետ, հաղորդում զրպարտիչ տեղեկություններ երկրում և հանրապետությունում տեղի ունեցող իրադարձությունների մասին։

Ի՞նչ կարելի է ասել նման մարդկանց մասին։ Հավանորեն, մի կողմից՝ արծաթ են տենչում, մյուս կողմից էլ՝ իրենց նկատմամբ մարդասիրական վերաբերմունքն ու մեզանում ծավալվող սոցիալիստական դեմոկրատիան դիտում են իբրև պետական իշխանության թուլացման նշան։ Ինչ արած, դրանք առաջինը չեն (և երևի վերջինն էլ չեն), որ, արևմտյան պրովոկատորների ազդեցության տակ ընկնելով, իրենց համար ճակատագրական սխալ են գործում։

Հարկ է ավելացնել, որ ներման արժանացած առանձին անձանց գործողությունները, երբ նրանք զրպարտիչ տեղեկություններ են հաղորդում, Արևմուտքում հետևյալ ձևով են օգտագործվել։ Հայտնի է, որ էկոլոգիայի հարցերը աշխարհում, երկրում ու հանրապետությունում հարուցում են մարդկանց օրինական տագնապը։ Այդ առնչությամբ, կուսակցական ու պետական մարմինների ձեռնարկած միջոցների հետ միասին, ակտիվորեն հանդես է գալիս և հասարակայնությունը։ Նման ելույթներ են եղել նաև Երևանում։ Սակայն Արևմուտքում, օգտագործելով հանրապետությունից այնտեղ հասած ինֆորմացիան և աղավաղելով այն ամենը, ինչ հնարավոր էր, էկոլոգիական ուղղվածության այդ ելույթներին հակասովետական բնույթ վերագրեցին։

Հասկանալի է՝ դաշնակների պարագլուխներ այդպիսիք չէին լինի, եթե բաց թողնեին նման «հոյակապ հնարավորությունը»։ Հենց նրանք էլ, Լոս-Անջելեսից Սան-Ֆրանցիսկո գալով, հոկտեմբերի 23-ին սովետական գլխավոր հյուպատոսության շենքի մոտ կազմակերպեցին դաշնակների հակասովետական ցույցը։

Ճիշտ է, նրանց հաջողվեց հավաքել սոսկ մի խումբ մարդկանց (շուրջ 40 հոգի), թեպետև ջանում էին շատերին տանել իրենց հետևից։ Իսկ ամենագլխավորն այն է, թե Սան-Ֆրանցիսկոյի այդ հակասովետական ելույթը ում էր ձեռնտու ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի ղեկավարների հանդիպման նախաշեմին։ Պատասխանը միանշանակ է՝ ԱՄՆ-ի այն առավել հետադիմական շրջաններին, որոնք հանդես են գալիս աշխարհում ռազմական լարվածության նվազեցման դեմ, հրթիռային սպառազինությունների կրճատման, սովետա-ամերիկյան հարաբերությունների բարելավման դեմ։

Իհարկե, դաշնակները, ինչպես ասում են, քաղաքականություն, և այն էլ մեծ, չեն անում։ Նրանց, ինչպես անցյալում, օգտագործում են հակասովետական ուժերը։ Պատմությունը դաշնակցական պարագլուխներին ոչինչ չի սովորեցրել։ Ահա թե ինչու նրանք դատապարտված են և՛ ժամանակի, և՛ ժողովրդի կողմից։

Իմպերիալիզմի հատուկ ծառայությունների այժմյան գործողություններում, գաղափարախոսական դիվերսիաներում ակտիվորեն օգտագործվում են հակասովետական-ազգայնամոլական կարգի թափթփուկները։ Դա ժողովր-



դա-աշխատանքային դաշինքն է (ԺԱԴ)— ռուսական վտարանդիության գաղափարական ժառանգորդները, դա ուկրաինական, մերձբալթյան նացիոնալիստների կազմակերպություններն են։ Այստեղ, իրենց ժողովուրդների դավաճանների այս խառնամբոխի մեջ են նաև դաշնակները։ Դե, իսկ դիրիժորը հայտնի է։ Ով վճարում է, նա էլ պատվիրում է երաժշտությունը։ Իսկ վճարում է, և այն էլ առանց ծախսերը խնայելու, համաշխարհային ռեակցիան։ Սա օբյեկտիվ իրողություն է, որը պետք է հաշվի առնել։

Կոմունիստների, բոլոր սովետական մարդկանց խնդիրն է՝ ծավալվող դեմոկրատացման ու հրապարակայնության պայմաններում վճռական հակահարված տալ գաղափարախոսական դիվերսիայի գործողություններին, փաստարկված մերկացնել դրանց հակասովետական, հակաժողովրդական բնույթը։

Մեծ Հոկտեմբերի 70-ամյակին նվիրված հանդիսավոր նիստում ընկ. Մ. Ս. Գորբաչովի զեկուցումը վերնագրված է՝ «Հոկտեմբերը և վերակառուցումը. հեղափոխությունը շարունակվում է»։ Տարողունակ ձևակերպում է այդ, մեր իրականության սոցիալ-քաղաքական էությունը։ Հպարտության զգացում, իր ժամանակին արժանի լինելու ձգտում է հարուցում այն։

Եթե հեղափոխությունը շարունակվում է, ապա բնականաբար, շարունակվում է և նրա պաշտպանությունը։ Սովետական չեկիստները ամբողջ ժողովրդի հետ միասին կանեն ամեն ինչ մեր հեղափոխությունը հուսալիորեն պաշտպանելու համար։

Վերջում կկամենայի մեջբերել գրող Միխայիլ Բուդարինի խոսքերը. «Հեռավոր հեղափոխական անցյալից են գալիս չեկիստների հերոսական ավանդույթները... սովետական չեկիստ, հետախույզ, որ պատերազմական խառնակ ժամանակներում նետվել ես թշնամու որջը։ Ջօր ու գիշեր, վայրկյաններ ու տարիներ դու քայլում ես մահվան մոտով, ինչպես բարակ սառույցի վրա։ Նիկոլայ Կուզնեցով, Ռիխարդ Զորգե, Ռուդոլֆ Աբել, Լև Մանևիչ...»։

---

# ԿԱՅՈՒՆ ՈՒ ԽՈՐ ՀԱՄՈԶՄՈՒՆՔԸ ՄԱՐԴԿԱՅԻՆ ԳՈՐԾՈՆԻ ԱԿՏԻՎԱՑՄԱՆ ԳՐԱՎԱԿԱՆՆ Է

**Մ. ՍԱՆԹՐՈՍՅԱՆ**
**ՀԿԿ Կենտկոմի պրոպագանդայի և ագիտացիայի բաժնի վարիչի տեղակալ, քաղլուսատւն վարիչ**

*ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅՈՒՆԸ ապրում է զարգացման ու կատարելագործման բարդ ու պատասխանատու փուլ: Երկրի կյանքում տեղի են ունենում հեղափոխական վերափոխումներ, վերակառուցումն ընդգրկել է մեր կենսագործունեության բոլոր բնագավառները: Կուսակցության մշակած ռազմավարական կուրսը կենսագործելու համար այն պետք է հասցվի աշխատավորական զանգվածներին, դառնա նրանց սեփականությունը, համոզմունքը: Միայն այդ դեպքում մարդիկ անմնացորդ նվիրումով իրենց ուժերն ի սպաս կդնեն առաջադրված համընդհանուր նպատակի իրագործմանը:*

*Նոր պայմաններում աշխատավորական զանգվածների ստեղծագործական կարողության ակտիվացումը անհրաժեշտաբար առաջադրում է աշխատավորների քաղաքական և տնտեսագիտական ուսուցման բովանդակությունը, կառուցվածքն ու մեթոդները արդի պահանջներին համապատասխանեցնելու խնդիրը: Ուսուցման այս համակարգի վերակառուցման կոնկրետ ու ամբողջական ծրագիր են ՍՄԿԿ Կենտկոմի՝ «Աշխատավորության քաղաքական և տնտեսագիտական ուսուցման վերակառուցման մասին» որոշումը և ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի հաստատած «Աշխատավորության քաղաքական և տնտեսագիտական ուսուցման կատարելագործման հիմնական ուղղությունները»:*

*Աշխատավորության մարքս-լենինյան կրթությանն այժմ ներկայացվում են շատ ավելի մասշտաբային, բարդ ու պատասխանատու խնդիրներ, որոնց կենսագործման համար կուսակցության Կենտկոմն իր որոշմամբ առաջադրում է ուսուցման նոր համակարգ: Դրան բնորոշ են լայն դեմոկրատիզմը, ուսուցման բովանդակության նպատակային ուղղվածությունը, կյանքի հետ օրգանական կապը, ժամանակակից տեխնիկական միջոցներով պրոպագանդայի հագեցումը, արդիական ծրագրերով, դասագրքերով, մեթոդական ձեռնարկներով նրա ապահովվածությունը, պրոպագանդիստների և ուսուցման կազմակերպիչների բարձր պրոֆեսիոնալիզմն ու գիտակությունը, աշխատանքի ստեղծագործական ոճը:*

*Գաղափարախոսական աշխատանքի արդյունավետությունը պայմանավորված է ամենից առաջ նրանով, թե այն որքանով է համապատասխանում զարգացման տվյալ փուլի պահանջներին, նպաստում աշխատավորության ուժերի մոբիլիզացմանը առաջադրվող նոր խնդիրների լուծման գործում: Նշանակում է՝ գաղափարախոսական աշխատանքը, տվյալ դեպքում աշխատավորության մարքս-լենինյան կրթությունը, պետք է լիովին համապատասխանի արդի բեկումնային փուլի բնորոշ պահանջներին, դրանք արտացոլի իր բովանդակության մեջ: Ահա այս առումով էլ առաջին պլանի վրա դրվեց* քաղուսուցման բովանդակության արմատական նորացումը, նրա գաղափարատեսական մակարդակի բարձրացումը: *Այս խնդրի լուծման նպատակով աշխատանքներն սկսվեցին վերակառուցման քաղաքական կուրսի մշակմանը զուգընթաց, ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թ. ապրիլյան պլենումից հետո, երբ կուսակցությունը պահանջեց գաղափարաքաղաքական դաստիարակությունն իր բոլոր ձևերով առավելագույնս շաղկապել մեր օրերի գլխավոր խնդրի՝ երկրի սոցիալ-տնտեսական զարգացման արագացման հետ:*

*Ուսուցման բովանդակության մեջ կատարվող փոփոխությունների բնորոշ կողմերից է այն, որ արդիական հրատապ պրոբլեմների ուսումնասիրությունը հնարավորություն է ընձեռում հաղթահարել ուսուցման կտրվածությունը կյանքից, հրաժարվել անցյալի՝ բազմիցս կրկնված դասընթացների դոգմատիկ սերտումից: Կյանքի, արտադրության հետ սերտորեն կապված նյութերի ուսումնասիրությանն անցնելը փոխում է ուսուցման նկատմամբ մարդկանց վերաբերմունքը, քննարկվող հարցերի հրատապությունը նպաստում է նրանց հետաքրքրասիրության բարձրացմանը:*

*Ուսուցման բովանդակության արմատական փոփոխման հետ միասին օբյեկտիվորեն պահանջ առաջացավ մեր ապրած փուլի բնույթին համապատասխան փոխել* նաև Քաղաքական լուսավորության համակարգում ուսուցման տրամաբանությունը, հաղթահարել խոսքի և գործի խզվածությունը:

*Ինչ խոսք, արդի պայմաններում էլ բոլոր դասընթացների տեսական հիմքը մարքս-լենինյան մեթոդաբանությունն է, գիտական կոմունիզմի հիմնադիրների տեսական ժառանգությունը, ՍՄԿԿ-ի և միջազգային կոմունիստական շարժման փորձը: Ուսումնասիրվող թեմաների մեջ առանձնահատուկ ուշադրություն է նվիրվում «Մարքսիզմ-լենինիզմը հասարակության հեղափոխական վերափոխման գիտական հիմքն է», «ՍՄԿԿ պատմական փորձը և արդիականությունը», «Մարքս-լենինյան փիլիսոփայությունը և սոցիալական առաջադիմությունը» «Քաղտնտեսությունը և սոցիալիստական արտադրության արդյունավետության պրոբլեմները», «Գիտական կոմունիզմը և սոցիալիզմի կատարելագործման հրատապ պրոբլեմները» դասընթացներին:*

*Տեսական-քաղաքական վիթխարի կարևորության փաստաթուղթ է Հոկտեմբերյան հեղափոխության 70-ամյակին նվիրված հանդիսավոր նիստում ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Մ. Ս. Գորբաչովի զեկուցումը, որտեղ տեսական խոր վերլուծության հիման վրա բացահայտված են ինչպես մեր անցած պատմական ուղու արդյունքները, այնպես էլ հեռանկարային զարգացման պրոբլեմային խնդիրները: Առանց չափազանցության կարելի է ասել, որ այդ փաստաթուղթը որակապես նոր բովանդակություն է հաղորդում քաղաքական ուսուցմանը:*

*Ուսուցումը ճիշտ մեթոդով կազմակերպելու դեպքում ավելի նպաստավոր պայմաններ են ստեղծվում արդիական դասընթացների ուսումնասիրման ընթացքում Կ. Մարքսի, Ֆ. Էնգելսի և Վ. Ի. Լենինի տեսական ժառանգության, գիտական կոմունիզմի տեսության յուրացման համար: Յուրաքանչյուր հրատապ հարցի, կյանքի առաջադրած թեմայի, պրոբլեմի քննարկում կապելով մարքս-լենինյան տեսական դրույթների հետ՝ կարելի է ցույց տալ հասարակական պրակտիկայի կողմից դրանց հաստատումը: Այս դեպքում տեսությունը, որպես արդիական հարցերի ըմբռնման մեթոդաբանություն, կյանքի տված օրինակների ուժով ավելի դյուրին է յուրացվում, դառնում գործունեության ուղեցույց:*

*Ուսուցումն այս ձևով կազմակերպելու համար, ինչ խոսք, պրոպագանդիստը պետք է ունենա տեսական բարձր պատրաստականություն, սկզբնաղբյուրների խոր իմացություն, որպեսզի կարողանա գտնել քննարկվող հարցերի պարզաբանման մեթոդաբանական ելակետը, հասցնի ունկնդիրներին, նրանց մեջ հարուցի հետաքրքրություն տեսական դրույթների և դրանց սկզբնաղբյուրների նկատմամբ:*

*ՍՄԿԿ Կենտկոմի «1986—1987 ուսումնական տարում աշխատավորների քաղաքական և տնտեսագիտական ուսուցման կազմակերպման մասին» որոշմամբ լայն հնարավորություններ ընձեռվեցին ուսուցման կազմակերպման դեմոկրատական սկզբունքի կիրառման համար: Շատ կուսկազմակերպություններում և կոլեկտիվներում դպրոցներն ու սեմինարները կոմպլեկտավորվեցին արտադրական սկզբունքով: Այսինքն՝ դրանց մեջ ընդգրկվեցին բրիգադների, հերթափոխությունների, արտադրության այլ ստորաբաժանումների, ֆերմա-*

տադրանքի որակը արմատապես բարելավելու հարցն էր, որը, ըստ էության, մեր կոլեկտիվի հարցերի հարցն է: Քննարկումն անցավ ունկնդիրների ակտիվ մասնակցության պայմաններում:

Բանվորուհի Հասմիկ Աշուղյանն, օրինակ, ասաց, որ վերջերս ցածր որակի պատճառով սպառող կազմակերպությունները հետ են ուղարկել 90 զույգ կոշիկ, որի համար ձեռնարկությունը կոլեկտիվի ստեղծած շահույթի հաշվին զգալի տուգանք է վճարել: Ահա այդպիսի մի շարք պատճառներով կոլեկտիվը 587 հազար ռուբլով թերակատարեց ինն ամիսների շահույթի պլանը: Հետ ստացված ապրանքի հարցը բրիգադում դարձրին քննարկման առարկա, մեկ առ մեկ նշեցին արտադրանքի թերությունները, ամեն մեկն իր աչքով տեսավ բացթողումները, արտադրական գործընթացի ոչ ճիշտ կամ ոչ լրիվ կատարումը:

Իսկ ունկնդիր Գոհար Թադևոսյանը նշեց, որ հաճախ թեև կոշիկը լավ է կարված լինում, բայց հետ է վերադարձվում սպառողների կողմից պահանջարկ չունենալու կամ վատորակ հումքի պատճառով: Այստեղ մեղքի իրենց բաժինն ունեն մոդելագործները: Նրանք պետք է հաճախակի նորացնեն և արտադրության մեջ ներդնեն սպառողի ճաշակին, պահանջներին համապատասխանող նոր մոդելներ: Որոշիչ դեր է խաղում նաև հումքը: Լինում են դեպքեր, երբ մատակարարող կազմակերպություններից ստացվում է ցածրորակ հումք, իսկ դա, ինչ խոսք, բացասաբար է անդրադառնում թողարկվող արտադրանքի որակի վրա: Այս գործում մեծ են ձեռնարկության մատակարարման բաժնի անելիքները: Բանվորուհին դրությունը շտկելու լուրջ հույսեր է կապում պետական ձեռնարկության (միավորման) վերաբերյալ ՍՍՀՄ օրենքի գործադրման հետ, որով հնարավորություն կընձեռվի պայմանագրային կապեր հաստատել այն ձեռնարկությունների հետ, որտեղ հումքը լավորակ է:

Պարապմունքների ժամանակ արված քննադատական դիտողություններն ու առաջարկները, որպես կանոն, ներկայացնում եմ կուսկազմակերպության բյուրոյին և ադմինիստրացիային՝ միջոցներ ձեռնարկելու համար: Հաջորդ պարապմունքներում ունկնդիրներին տեղյակ եմ պահում արդյունքների մասին:

Ուսումնական ծրագրին համապատասխան՝ հանգամանորեն ուսումնասիրելու ենք ՍՍՀՄ օրենքը պետական ձեռնարկության (միավորման) մասին: Ֆաբրիկայի կոլեկտիվը ընթացիկ տարում աշխատում է տնտհաշվարկի պայմաններում, իսկ 1988 թ. հունվարի 1-ից անցնելու է ինքնաֆինանսավորման: Պարապմունքների ժամանակ կուսումնասիրվեն տնտհաշվարկի և ինքնաֆինանսավորման առանձնահատկությունները: Իմ՝ որպես պրոպագանդիստի, նպատակն է ունկնդիրներին ցույց տալ, որ տնտհաշվարկը և ինքնաֆինանսավորումը էականորեն ընդլայնում են ձեռնարկությունների իրավունքներն ու ինքնուրույնությունը արտադրական և սոցիալական բոլոր հարցերի լուծման գործում: Միաժամանակ մեծանում է կոլեկտիվների պատասխանատվությունը տնտեսական գործունեության արդյունավետության համար: Տեսական նյութերի ուսումնասիրման հետ միասին մենք պետք է խորապես պարզաբանենք, թե կոլեկտիվը ինչքանով է պատրաստ տնտհաշվարկի և ինքնաֆինանսավորման անցնելուն: Ես ջանում եմ ունկնդիրների մեջ ամրապնդել այն համոզմունքը, որ մեր հասարակության սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու կուսակցության կուրսի իրականացումը պահանջում է, որ կոլեկտիվի յուրաքանչյուր անդամ լավագույն ձևով կատարի իր պարտականությունները, ակտիվորեն մասնակցի վերակառուցման աշխատանքներին:

Պրոպագանդիստ լինելը, այո՛, պատվավոր գործ է, որին նվիրել եմ 40 տարի: Ինձ համար հաճելի է գաղափարապես զինել ունկնդիրներին, մտքեր փոխանակել նրանց հետ, արձագանքել հուզող հարցերին: Ահա թե ինչու քաղաքական ուսուցման նոր ուսումնական տարում ևս հոժարակամ ու մեծ սիրով ստանձնել եմ այդ պատասխանատու աշխատանքը:

**Մ. ԾԻՐԻՆՅԱՆ**
Երևանի մոդելային կոշիկների ֆաբրիկայի պրոպագանդիստ



# ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ ԱՌՈՂՋԱՊԱՀՈՒԹՅԱՆ ՆՈՐ ԲԺՇԿԱՏԵԽՆԻԿԱԿԱՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ

**Է. ԳԱԲՐԻԵԼՅԱՆ**
ՀՍՍՀ առողջապահության մինիստր
**Հ. ՆԻԿՈՂՈՍՅԱՆ**
Հանրապետական ախտորոշման կենտրոնի ղեկավար

*ԵՐԿՐԻ ՍՈՑԻԱԼ-ՏՆՏԵՍԱԿԱՆ ՀԱՄԱԿԱՐԳԻ խոր վերակառուցումը, որին ձեռնամուխ է եղել ողջ սովետական ժողովուրդը, իր արտացոլումն է գտնում նաև առողջապահության բնագավառում: «Առողջապահության վերակառուցումը,— նշված է «Տասներկուերորդ հնգամյակում և մինչև 2000 թվականն ընկած ժամանակաշրջանում բնակչության առողջության պահպանումը զարգացնելու և ՍՍՀՄ-ի առողջապահությունը վերակառուցելու հիմնական ուղղություններում»,— խոշորամասշտաբ պետական միջոցառում է, կարևոր իրադարձություն սովետական հասարակության կյանքում: Վերակառուցման պրոցեսում պետք է զարգացնել հայրենական բժշկության ձեռք բերած ողջ լավագույնը, վերացնել բնակչության առողջության պահպանման գործի հետագա բարելավման ճանապարհին եղած խոչընդոտները, մեծացնել առողջապահության ավանդը սոցիալիստական հասարակության զարգացման գործում նրա էկոնոմիկայի մեջ, երկրի պաշտպանունակության ամրապնդման ասպարեզում»: Տարիների ընթացքում երկրի կյանքում կուտակված լճացման երևույթները, նոր պահանջների անտեսումն այստեղ ևս հանգեցրել էին մի իրավիճակի, երբ միայն արմատական վերակառուցումը կարող էր առողջապահությունը դնել զարգացման ժամանակակից ուղու վրա: Այդ իմաստով այսօր մեծ նշանակություն է ստանում առողջապահության գիտականորեն հիմնավորված կազմակերպական նոր համակարգի մշակումը, որը հաշվի առներ հասարակության սոցիալ-տնտեսական զարգացման ժամանակակից միտումները, ժողովրդի առողջության պահպանման բնագավառում մեր և արտասահմանյան զարգացած երկրների կուտակած հարուստ փորձը:*

*Այդ համակարգի կարևորագույն բաղադրիչներից մեկը բժշկատեխնիկական նոր քաղաքականությունն է, որը մեր հանրապետությունում սկսել է իր ձևավորումն ստանալ վերջին 1,5—2 տարիների ընթացքում: Ելակետ ունենալով ժամանակակից գիտատեխնիկական առաջընթացի արագացման, բժշկության ու բժշկագիտության ինտեգրացման տենդենցները՝ այն օրեցօր լայնացնում է իր ազդեցության ոլորտը, յուրահատուկ «բարշիչ» ուժ հանդիսանալով առողջապահության նոր տեխնոլոգիայի ներդրման համար:*

*Բժշկատեխնիկական նոր քաղաքականության հիմքը առողջապահության կազմակերպման գործում ժամանակակից տեխնիկայի ու տեխնոլոգիաների դերի կտրուկ բարձրացումը և դրանց ներդրման ու օգտագործման սկզբունքորեն նոր համակարգի կիրառումն է: Բնական է, որ այն ունի իրագործման յուրահատուկ ուղիներ, հենվում է կազմակերպական որոշակի ձևերի վրա և պայմանավորում բժշկական ու սոցիալ-տնտեսական հետևանքների մի ամբողջ*

շարք: Նշված օղակների վերլուծությունը թույլ է տալիս՝ ավելի կոնկրետ պարզաբանելու բժշկատեխնիկական նոր քաղաքականության էությունը:

Նախ, որո՞նք են նոր քաղաքականության հիմնական կազմակերպական ձևեր կամ, այլ կերպ ասած, նրա կրող «տարրերը»: Դրանցից առաջինը, մեր կարծիքով, ախտորոշման տեխնոլոգիական նոր համակարգն է, որի կազմակերպման հիմքը ախտորոշման հանրապետական կենտրոնն է: Վերջինս ստեղծվել է 1984 թ. և իր տեսակի մեջ առաջինն է երկրում: Կազմակերպական և ֆունկցիոնալ մի շարք հատկանիշներով այն սկզբունքորեն տարբերվում է երկրում վերջին տասնամյակում ստեղծված կենտրոնացված լաբորատորիաներից: Առաջին հերթին, ախտորոշման կենտրոնը, ի տարբերություն միապրոֆիլ կամ բազմապրոֆիլ կենտրոնացված լաբորատորիաների, իր մեջ միավորում է ժամանակակից լաբորատոր-գործիքային ախտորոշման բոլոր հիմնական ուղղությունները և առաջնահերթ զարգացում է ապահովում այն մեթոդներին, որոնք առավել համապատասխանում են գիտության ու տեխնիկայի նորագույն նվաճումներին: Այդ իմաստով ախտորոշման կենտրոնը առողջապահության մեջ ժամանակակից գիտատեխնիկական առաջընթացի հայելին է և, ինչ-որ իմաստով, նաև նրա զգայուն բարոմետրը: Երկրորդ, ի տարբերություն կենտրոնացված լաբորատորիաների, կենտրոնը ոչ թե սոսկ սարքավորումների և հետազոտությունների մեխանիկական համակցում է, այլ որակապես մի նոր միավորում, որը մշակում և կենսագործում է ախտորոշման ուրույն կազմակերպական ձևեր ու մեթոդաբանություն: Ի տարբերություն կենտրոնացված լաբորատորիաների, որոնք սպասարկում են բուժական հիմնարկների խիստ սահմանազատված խումբ, այն իր ոլորտն է ընդգրկում ռեգիոնի (տվյալ դեպքում՝ հանրապետության) բոլոր բուժական հիմնարկները՝ հավասարեցնելով և միաժամանակ զգալիորեն բարձրացնելով նրանց հնարավորությունները հետազոտման ժամանակակից մեթոդների լայն օգտագործման առումով: Վերջապես կենտրոնը, բացի գործնական առողջապահությունից, մեծ դեր ունի նաև գիտական հետազոտությունների կազմակերպման գործում՝ շնորհիվ նրանց մեթոդական մակարդակի զգալի բարձրացման: Այսօր ախտորոշման հանրապետական կենտրոնը միավորում է լաբորատոր և գործիքային հետազոտությունների ժամանակակից հիմնական ուղղությունները՝ ռենտգենաբանական, ռադիոիզոտոպային, ուլտրաձայնային, էնդոսկոպիական, ֆունկցիոնալ ախտորոշում, կլինիկական քիմիա, իմունաբանություն, մանրէաբանություն, արյունաբանական, ռադիոիմունաբանական և իմունոֆերմենտային հետազոտություններ:

Հետազոտման կիրառվող մեթոդների քանակը ընդհանուր առմամբ կազմում է մոտ 400: Յուրաքանչյուր օր նրա ծառայություններից օգտվում են շուրջ 1.500 մարդ, ընդ որում հետազոտման ուղարկվում են հիվանդները և նրանցից վերցված կենսանյութը: Հիվանդների ու հետազոտման նյութի այդ մեծ հոսքի կարգավորումը, ինչպես նաև ստացվող բազմաքանակ ինֆորմացիայի հավաքումն ու մշակումը իրագործվում են էլեկտրոնային հաշվիչ մեքենայի վրա ստեղծված ավտոմատ-ինֆորմացիոն համակարգի միջոցով, որի հիմնական խնդիրը ախտորոշման պրոցեսի կառավարումն ու օպտիմալացումն է, ինչպես նաև ախտորոշման տվյալների «բանկի» ստեղծումը:

Առանձնահատուկ ուշադրության է արժանի ախտորոշման կենտրոնի գործունեության տեխնոլոգիան: Այն ուղղված է առավել օպտիմալ ճանապարհով հիվանդների կոմպլեքս հետազոտմանը, բուժական հիմնարկների հետ սերտ փոխհամագործակցության ապահովմանը, և ունի մի շարք առանձնահատկություններ գոյություն ունեցող ախտորոշիչ ծառայությունների համեմատությամբ: Նախ, հիվանդին հետազոտության ուղարկող բժիշկը կարող է ընտրություն կատարել երկու հնարավոր ուղիների մեջ. ուղեգրում նշել իր կարծիքով անհրաժեշտ հետազոտությունների ցանկը (եթե նպատակահարմար ու հնարավոր է գտնում այդ հետազոտությունների սահմաններում և սեփական ուժերով ավարտել հիվանդի ախտորոշման պրոցեսը) կամ այնտեղ նշել միայն նախնական ախտորոշումը՝ հետազոտությունների ցանկի ընտրությունը թողնելով ախտորոշման կենտրոնի վրա: Երկրորդ դեպքում հիվանդի ախտորոշման հարցը վստահվում է կոնսուլտացիոն բաժնին, որը կենտրոնի այլ ծառայությունների օգնությամբ նշանակում է սահմանում և մշակում յուրաքանչյուր



կոնկրետ դեպքի համար անհրաժեշտ ախտորոշիչ ինֆորմացիան: Սակայն փորձը ցույց է տալիս, որ պոլիկլինիկական հիմնարկների բժիշկները հիմնականում (85—90 տոկոսի դեպքերում) կիրառում են առաջին ուղին, այսինքն՝ իրենք են նշանակում կոնկրետ հետազոտությունները և կիրառում ստացվող տվյալները: Այս փաստը վկայում է հետազոտության ժամանակակից մեթոդների կիրառման հարցում բժիշկների անհրաժեշտ հետաքրքրության և շահագրգռվածության, սեփական գիտելիքների ու կարողությունների նկատմամբ վստահության աճի մասին. դա թույլ է տալիս լավատեսորեն նայել բժիշկների մասնագիտական մակարդակի բարձրացման և հիվանդների ախտորոշումը առավելապես պոլիկլինիկական էտապ տեղափոխելու հեռանկարին, խնդիրներ, որոնց լուծմանն է ուղղված ախտորոշման կենտրոնի գործունեությունը:

Անդրադառնալով կենտրոնի գործունեության տեխնոլոգիային՝ համառոտ նշենք նաև նրա այլ առանձնահատկությունները. ա) կենտրոնը ակտիվ կերպով կարող է միջամտել հետազոտությունների ցանկի ընտրությանը նաև այն դեպքում, երբ ուղարկող բժշկի կողմից այն արդեն նշված է: Դա կարող է տեղի ունենալ հենց հաշվառման բաժնում, եթե կոմպյուտերային հատուկ ծրագիրը անհամապատասխանություն է հայտնաբերում բժշկի կողմից նշված նախնական ախտորոշման և նրա իսկ նշանակած հետազոտությունների ցանկի մեջ կամ արդեն հետազոտման պրոցեսում, երբ ստացվող տվյալները հանգեցնում են լրացուցիչ հետազոտությունների նշանակման անհրաժեշտության: Ախտորոշիչ մի ծառայությունից մյուսն ուղարկելու այս պրոցեսը կարող է կրկնվել մի քանի անգամ անընդմեջ՝ մինչև յուրաքանչյուր կոնկրետ դեպքում հետազոտման անհրաժեշտ մակարդակի ձեռքբերումը. բ) հետազոտության պատասխանները, որպես կանոն, տրվում են ոչ թե հիվանդին կամ նրա հարազատներին, այլ հաջորդ օրը հասցվում են անմիջականորեն ուղարկող բժշկին: Երևան քաղաքում դա արվում է կենտրոնի տրանսպորտային միջոցներով, նրա սահմաններից դուրս՝ միջքաղաքային ավտոբուսային երթուղիներով, որի կապակցությամբ առողջապահության և ավտոմոբիլային տրանսպորտի մինիստրությունները համատեղ պայմանագիր են կնքել: Դա թույլ է տալիս ապահովելու ախտորոշման կենտրոնի և բուժհիմնարկների փոխհամագործակցությունը, բարձրացնում է բժշկի հնարավորությունները և դերը հիվանդի ախտորոշման հարցում, ամրապնդում բժիշկ-հիվանդ փոխպատասխանատվությունը: Շտապ դեպքերում հետազոտության պատասխանը տրվում է հեռատիպային կապի միջոցով. գ) լայնորեն օգտագործվում է հիվանդների նախնական հերթագրման կոմպյուտերային համակարգը, որը հնարավորություն է ընձեռում՝ յուրաքանչյուր հիվանդի համար նախօրոք որոշել և երաշխավորված ձևով ապահովել հետազոտության օրը, ժամը և կաբինետը: Նախնական հերթագրման համար պարտադիր չէ հիվանդի ներկայանալը հաշվառման բաժին. այն իրագործվում է նաև հեռատիպային և հեռախոսային կապի միջոցով (վերջինիս դեպքում դա կարող է անել թե՛ ուղարկող բուժհիմնարկի անձնակազմը և թե՛ ինքը՝ հետազոտման ուղեգիր ստացած հիվանդը). դ) կենտրոնը այժմ սկսում է կիրառել նաև հետազոտման ուրույն մեթոդաբանություն: Դա առանձին հիվանդությունների համար մշակված հետազոտման բազմաստիճան սխեմաներն են, որոնք կարող են օգտագործվել թե՛ բժշկական և թե՛ կոմպյուտերային հսկողության տակ: Ինչպես վկայում է առաջին փորձը, նման սխեմաների օգտագործումը թույլ է տալիս հնարավորին չափ կարճ ճանապարհով և հետազոտման մեթոդների օպտիմալ կոմպլեքսով հասնել լաբորատոր-գործիքային ախտորոշման անհրաժեշտ մակարդակի:

Այսպիսով, ախտորոշման կենտրոնը առողջապահության կազմակերպման որակապես նոր ձև է և կրում է ժամանակակից գիտատեխնիկական առաջընթացի դրոշմը: Շնորհիվ առողջապահության ամենատարբեր օղակների վրա հսկայական ազդեցության՝ այն զգալիորեն փոխում է եղած պատկերացումները առողջապահական առանձին կատեգորիաների, նրանց գնահատման չափանիշների, կադրային և տեխնիկական ապահովման հարցերում: Հենց այդ իմաստով է, որ ախտորոշման կենտրոնը դառնում է բժշկատեխնիկական նոր քաղաքականության հիմնական կրողներից մեկը: Կազմակերպական տեսակետից նա այդ քաղաքականությունը տարածում է երկու հիմնական ուղիներով.

առաջին հերթին դրանք կենտրոնի մասնաճյուղերն են և հանրապետության բուժական հիմնարկներում գործող ախտորոշիչ ու պրոֆիլակտիկ ծառայությունները, որոնք մենք դիտում ենք որպես այդ կենտրոնի «ներկայացուցիչներ» տեղերում, և որոնք էլ նրա հետ միասին կազմում են ախտորոշման միասնական համակարգը։ Երկրորդ ուղին ավելի բարդ է, այն իրագործվում է առողջապահության մինիստրության և առողջապահական այլ մարմինների միջոցով։ Այդ իմաստով հատկապես մեծ է այնպիսի օղակների դերը, ինչպիսիք են մինիստրության բուժպրոֆիլակտիկ օգնության, կադրերի, «Հայբուժտեխնիկա» և դեղատնային վարչությունները, քաղաքային առողջապահության բաժինները. Նրանց կազմակերպական, կադրային ու տեխնիկական քաղաքականության ձևավորման հարցում հետզհետե ավելի ու ավելի է մեծանում ախտորոշման կենտրոնի գործունեության ու նրանով պայմանավորված առողջապահական նոր տեխնոլոգիայի դերը։

Բժշկատեխնիկական քաղաքականության երկրորդ «կրող տարրը» հանրապետության առողջապահության միասնական ինֆորմացիոն-հաշվողական համակարգն է, որը մենք ստեղծում ենք ինչպես մինիստրության հաշվողական և ախտորոշման կենտրոնների, այնպես էլ բուժական այլ հիմնարկների բազայի վրա։ Այդ համակարգի որոշ ենթաբաժիններ արդեն «դասական» են դարձել և կիրառվում են երկրի տարբեր հանրապետություններում (բժշկական տեխնիկայի և դեղանյութերի ավտոմատ հաշվառում, կադրային, ֆինանսական հաշվետվությունների կազմում, բուժհիմնարկների գործունեության ավտոմատ կառավարում և այլն)։ Դրա հետ զուգահեռ նոր բժշկատեխնիկական քաղաքականության հիմքում մենք դրել ենք նաև այս ասպարեզի համար սկզբունքորեն նոր խնդիրներ։ Դրանցից է, օրինակ, հանրապետության բնակչության բժշկական տվյալների միասնական «բանկը», որը թույլ է տալիս տարբեր ռեգիոններում ժողովրդի առողջության ու առողջապահության վիճակի գնահատմանը մոտենալ սկզբունքորեն նոր մակարդակով, ապահովել նրա սերտ կապը սոցիալ-տնտեսական գործոնների հետ, իսկապես գիտական հիմքերի վրա դնել առողջապահության կազմակերպման հարցերը։ Երկրի առողջապահության համար նոր ձև է հանդիսանում նաև բնակչության ախտորոշիչ և կանխարգելիչ քննությունների կազմակերպման միասնական ինֆորմացիոն համակարգը, որը ի մի է բերում այդ բնագավառում գործող բոլոր հրամաններն ու հրահանգները՝ որակապես նոր գործիք հանդիսանալով առողջապահության ղեկավարների ու առանձին բժիշկների ձեռքում՝ կազմակերպելու բնակչության դիսպանսերացումը։ Վերջապես ուշադրության արժանի են բժշկի բարոյական և մասնագիտական կերպարի գնահատման ավտոմատ համակարգերը։ Նրանցից առաջինն արդեն մեկ տարի է, ինչ կիրառվում է բուժհիմնարկներում և որոշակի արձագանք է գտել ոչ միայն հանրապետությունում, այլև նրա սահմաններից դուրս։ Երկրորդը մշակվել է բժիշկների ատեստավորման ավտոմատ ինֆորմացիոն համակարգի ձևով և այժմ փորձնական կիրառում է անցնում։

Համառոտ այսպիսիք են բժշկատեխնիկական նոր քաղաքականության հիմնական կազմակերպման ձևերը, նրա «կրող տարրերը»։ Իսկ որո՞նք են նրա իրականացման մեթոդական ձևերն ու ուղիները։ Դրանք, մեր կարծիքով, երեքն են, որոնք կարող են դիտարկվել միմյանց հետ սերտ փոխկապակցության մեջ՝ բժշկական տեխնիկայի և տեխնոլոգիաների կենտրոնացում, ավտոմատացում և կոմպյուտերացում։ Ավելին, նշված գործոնները ոչ միայն փոխկապակցված են, այլև լրացնում, անգամ փոխպայմանավորում են միմյանց։ Բժշկական բարդ սարքավորումների կենտրոնացումը, օրինակ, կախված է նրանց ավտոմատացման բարձր աստիճանից և իր հերթին պայմանավորում է բժշկական այնպիսի տեխնոլոգիաների կիրառում, որտեղ ավտոմատացումն ու ինֆորմացիոն-հաշվողական համակարգերի կիրառումն անխուսափելի են։ Կոմպյուտերացված տեխնոլոգիաների ներդրումն, իր հերթին, պայմանավորում է բժշկական սարքավորումներում հաշվողական տեխնիկայի տարրերի ավելի ու ավելի լայն կիրառում, դրա հաշվին նրանց արտադրողականության զգալի աճ, բուժհիմնարկների համար մատչելիության սահմանափակում և, որպես հետևանք, կենտրոնացված ծառայություններում կոնցենտրացման անհրաժեշտություն։ Այսպիսով, բժշկական տեխնիկայի ու տեխ-



նոլոգիաների ավտոմատացման, կենտրոնացման ու կոմպյուտերացման միասնությունը գիտատեխնիկական առաջընթացի արագացման ներկա փուլում որակապես նոր բովանդակություն է ստանում։ Այդ միասնության մեջ էլ պետք է դիտել բժշկատեխնիկական նոր քաղաքականության մեթոդաբանական հիմքը։

Այժմ բժշկատեխնիկական նոր քաղաքականության սոցիալ-տնտեսական արդյունավետության և հեռանկարների մասին։

Առաջինը և ամենակարևորը, թերևս, բժշկագիտության ու տեխնիկայի նորագույն նվաճումների լայն մատչելիությունն է հանրապետության բոլոր բուժական հիմնարկների, բժիշկների և բնակիչների համար։ Հավասար պայմանների մեջ դնելով գյուղական և քաղաքային բնակչությանը, տարբեր բուժհիմնարկներում աշխատող բժիշկների՝ այն նաև նոր հոգեբանական մթնոլորտ է ստեղծում առողջապահության համակարգում։ Բժշկի հնարավորությունների մեծացման հետ զգալիորեն աճում է նաև նրա հեղինակությունը, բժիշկ-հիվանդ փոխհարաբերություններում աճում է փոխադարձ պատասխանատվության դերը։

Բժշկատեխնիկական նոր քաղաքականության կարևոր արդյունքներից է նաև այն, որ զգալիորեն փոխվում է ախտորոշիչ հետազոտությունների կառուցվածքը։ Ծանրության կենտրոնը տեղափոխվում է դեպի արտահիվանդանոցային ախտորոշումը, որը ամենաարդյունավետն է ու նպատակահարմարը թե՛ բժշկական և թե՛ սոցիալական ու տնտեսական առումով։ Այս հարցի միայն հոգեբանական կողմն արդեն մեծ իմաստ ունի, քանի որ հետազոտման պրոցեսը հիվանդի համար սովորական աշխատանքային ու կենցաղային պայմաններում անցկացնելու առավելությունն անվիճելի է։ Դրան պետք է գումարել նաև զգալի սոցիալական ու տնտեսական արդյունավետությունը՝ կապված բնակչության ժամանակավոր անաշխատունակության կրճատման, բուժհիմնարկների մահճակալային ֆոնդի օգտագործման էֆեկտիվության բարձրացման հետ։ Այսպես, հաշվարկները ցույց են տալիս, որ հանրապետության ստացիոնար ծառայություններում հիվանդների բուժման միջին տևողությունը միայն մեկ օրով կրճատելու դեպքում նշված գործոններով պայմանավորված տնտեսական էֆեկտը կարող է կազմել տարեկան մոտ 7 մլն ռուբլի։ Այդ իսկ ճանապարհով, «ազատվող» մահճակալ-օրերի քանակը հավասարազոր է մոտ 1.500 մահճակալ-տեղով նոր ստացիոնարների կառուցման, որի համար անհրաժեշտ մոտ 50 մլն ռուբլի գումարը կարելի է ուղղել գոյություն ունեցող բուժհիմնարկների վերակառուցմանն ու վերազինմանը։ Այսպիսին է հիվանդների բուժման տևողության՝ միայն մեկ մահճակալ-օրով կրճատման տնտեսական էֆեկտիվությունը։ Հետագայում, իհարկե, մենք նախատեսում ենք հասնել բուժման միջին տևողության 3—4 օր կրճատման։ Արտահիվանդանոցային ախտորոշման ծավալի ու որակի աճի ներկայիս տեմպերը թույլ են տալիս հուսալու, որ առաջիկա 5—6 տարիների ընթացքում այդ խնդրի լուծումը ռեալ է։

1987 թ. վերջին ամիսներին Երևան քաղաքի մի շարք բուժհիմնարկներում անցկացված միջոցառումը, որի ընթացքում հիվանդների պլանային հոսպիտալացումը կատարվում էր առավելապես ախտորոշման կենտրոնի միջոցով նախնական հետազոտումը անցկացնելուց հետո, ցույց տվեց, որ արդյունքները կարող են ավելի զգալի և, ինչ-որ տեղ, անգամ անսպասելի լինել։ Պարզվեց, օրինակ, որ պարտադիր մինչհոսպիտալային ախտորոշում անցնող հիվանդների միայն 40 տոկոսն է, որ հետագայում իսկապես ստացել է ստացիոնար բուժում։

Հիվանդների մյուս մասը, ախտորոշումը ճշտելուց հետո, չի դիմել ստացիոնար, քանի որ կա՛մ ընդհանրապես չի հայտնաբերվել որևէ լուրջ բուժական միջոցառում պահանջող հիվանդություն, կամ պոլիկլինիկական բժշկի որոշմամբ բուժումը անց է կացվել ամբուլատոր պայմաններում։ Եթե սրան ավելացնենք, որ հիվանդների մի զգալի մասը ստացիոնար է ուղարկվում ընդհանրապես միայն ախտորոշումը ճշտելու նպատակով, ապա ստացված պատկերը շատ հետաքրքիր է ու խոստումնալից։ Իհարկե, բերվածը միայն նախնական արդյունքներ են և ընդգրկում են բուժհիմնարկների համեմատա-

բար սահմանափակ խումբ: Հաջորդ տարիների ուսումնասիրությունն, անշուշտ, ավելի որոշակի հետևությունների աղբյուր կարող է հանդիսանալ:

Վերջնական նպատակը այս հարցում մեկն է. հասնել այն բանին, որ մահճակալը ծառայի միայն սուր և ենթասուր հիվանդությունների բուժման համար, իսկ հիվանդների ախտորոշման ու վերականգնողական բուժման պրոցեսը տեղափոխվի առավելապես արտահիվանդանոցային էտապ: Արտասահմանյան զարգացած երկրների փորձը ցույց է տալիս, որ սա է առողջապահության զարգացման գլխավոր միտումներից մեկը:

Տնտեսական շահավետության կարևոր կողմերից է նաև թանկարժեք ու դժվարամատչելի բժշկական սարքավորումների էֆեկտիվության կտրուկ բարձրացումը: Դա պայմանավորված է ինչպես սարքավորումների երկհերթ և շուրջօրյա օգտագործմամբ, այնպես էլ հետազոտությունների կազմակերպման նոր, ավելի բարձր արտադրողական տեխնոլոգիայի կիրառմամբ, հետազոտության պրոցեսի լայն կոմպյուտերիզացիայով: Այդ նույն գործոնները հանգեցնում են նաև հիվանդների հետազոտության ինքնարժեքի զգալի կրճատման: Կուտակված փորձը ցույց է տալիս, որ ախտորոշման խոշոր կենտրոնի պայմաններում բժշկական սարքավորումների օգտակար գործողության գործակիցը 2—2,5 անգամ ավելի բարձր է, իսկ առանձին հետազոտությունների ինքնարժեքը՝ 20—30 տոկոսից ցածր՝ ապակենտրոնացված ախտորոշիչ ծառայությունների համեմատությամբ:

Բժշկատեխնիկական նոր քաղաքականությանը բնորոշ է նաև ժամանակակից գիտատեխնիկական առաջընթացի նվաճումների ներդրման արագացումը: Դա պետք է բացատրել այն առանձնահատուկ նշանակությամբ, որ ունեն հետազոտման ժամանակակից մեթոդները և կոմպյուտերային համակարգերը բժշկության ու առողջապահության ամենատարբեր բնագավառներում: Այդ առանձնահատկության շնորհիվ ստեղծվում է մի արդյունավետ մեխանիզմ, որի շնորհիվ ախտորոշման և ինֆորմացիոն հաշվողական ասպարեզներում ներդրվող՝ անգամ նեղ շրջանակ կրող նորույթները «շրջապտույտի» մեջ են ընդգրկում բժշկության ու բժշկագիտության շատ ճյուղեր՝ արագացնելով նրանց զարգացման ընթացքը ժամանակի պահանջներին համապատասխան: Ասվածի վառ օրինակ կարող են հանդիսանալ վերջին տարիներին ներդրված ուլտրաձայնային, ռադիոիզոտոպային, էնդոսկոպիական, անգիոգրաֆիկական, ռադիոիմունաբանական և իմունոֆերմենտային հետազոտման մեթոդները, ախտորոշիչ հետազոտությունների կազմակերպման և բնակչության բժշկական տվյալների ավտոմատ ինֆորմացիոն համակարգերը: Նրանց շնորհիվ արագացված զարգացում ստացան էնդոկրինոլոգիական, անոթային վիրաբուժությունը, գաստրոէնտերոլոգիան, ալերգոլոգիան, կազմավորվեցին այնպիսի նոր ճյուղեր, ինչպիսիք են ռենտգենէնդովասկուլյար վիրաբուժությունը, կլինիկական իմունոլոգիան, վիրաբուժական էնդոսկոպիան, նոր որակ ստացավ առողջապահության կազմակերպման և բժշկական տվյալների մշակման համակարգը:

Սկզբունքորեն նոր հնարավորություններ են բացվում նաև գիտաբժշկական հետազոտությունների կազմակերպման բնագավառում: Դրան նպաստում է նորագույն մեթոդների մատչելիությունը, որը ախտորոշման կենտրոնի կողմից ապահովվում է ոչ միայն պրակտիկ առողջապահության, այլ նաև գիտահետազոտական հիմնարկների համար: Ընդ որում ախտորոշման կենտրոնի մեթոդական հնարավորություններից օգտվում են թե մեր մինիստրության և թե ակադեմիական ցանցի գիտահետազոտական հիմնարկները:

Գոյություն ունի նաև գիտական հետազոտությունների խթանման և նրանց մեթոդական մակարդակի բարձրացման երկրորդ ճանապարհը. դա բնակչության բժշկական տվյալների ավտոմատ-ինֆորմացիոն համակարգն է, որը կտրուկ կերպով ընդլայնում է գիտական մշակման ենթակա նյութի սահմանները: Դրանով եզակի հնարավորություն է ընձեռվում գիտականորեն գնահատել բնակչության և առողջապահության վիճակը տարբեր ռեգիոններում, ուսումնասիրել առանձին հիվանդությունների տարածվածությունն ու օրինաչափությունները, վերհանել նրանց կապը սոցիալ-տնտեսական և շրջակա միջավայրի գործոնների հետ: Ընդհանուր առմամբ, գիտական հետազոտությունները բժշկատեխնիկական նոր քաղաքականության պայմաններում ունեն այն



առանձնահատկությունը, որ թելադրվում է ոչ թե զուտ գիտական հետաքրքրությունից, այլ ինքնաբերաբար բխում է պրակտիկ առողջապահության շրջանակներում կուտակվող հարուստ ինֆորմացիայից՝ հիմք ունենալով վերջինիս զգալիորեն մեծացած մեթոդական հնարավորությունները:

Վերջապես, բժշկատեխնիկական նոր քաղաքականությունը հանգեցնում է այնպիսի կարևոր գործոնի, ինչպիսին բժիշկների մասնագիտական մակարդակի և կոմպյուտերային գրագիտության բարձրացումն է: Այլ կերպ ասած, նա ստեղծում է կադրային այն բազան, առանց որի ինքը չի կարող գոյություն ունենալ: Այս դիալեկտիկական միասնությունը ևս ունի իր մեխանիզմը, որի մեջ կարելի է առանձնացնել երկու հիմնական ուղղություն. առաջինը պասսիվ գործոն է և պայմանավորված է նրանով, որ գիտության ու տեխնիկայի նորագույն նվաճումների լայն մատչելիությունն արդեն ստիպում է բժիշկներին կամա թե ակամա խորանալ դրանց էության մեջ, պարզել կիրառման ասպարեզները, վերծանել ստացվող տվյալները և այլն: Այդ են նրանցից պահանջում փոխված իրավիճակը, հիվանդի շահերը, ինֆորմացիայի օրեցօր աճող ծավալը: Մյուս գործոնը այն ակտիվ քաղաքականությունն է, որը մենք տանում ենք նոր մեթոդների, տեխնիկայի ու տեխնոլոգիաների ներդրման ու պրոպագանդման ուղղությամբ: Վերջին 2—3 տարիների փորձը ցույց է տալիս, որ «սառույցը», թեև դանդաղ, բայց սկսում է շարժվել. բժիշկների, հատկապես երիտասարդ սերնդի ներկայացուցիչների մոտ աճում է հետաքրքրությունը բժշկագիտության ու տեխնիկայի նորագույն նվաճումների նկատմամբ, այն դառնում է նրանց գործունեության անբաժանելի մասը: Առողջապահության վերակառուցման ներկա փուլում առաջընթացի ու վերափոխման ավելի հուսալի հենարան դժվար է գտնել:

Բժշկատեխնիկական նոր քաղաքականությունը կազմավորման սկզբնային շրջանում է և, անշուշտ, ունի զարգացման իր հեռանկարները: Նրանցից մի քանիսի մասին, որոնք առավել սկզբունքային են և կընդգրկեն, հավանաբար, մինչև 2000 թ. ընկած ժամանակաշրջանը, արդեն ինչ-որ չափով նշվեց: Դրանք են՝ աստիճանական անցում հիվանդների առավելապես արտահիվանդանոցային, պոլիկլինիկական ախտորոշման. հիվանդների բուժման և ախտորոշման ժամկետների զգալի կրճատում. մահճակալային ֆոնդի օգտագործման արդյունավետության բարձրացում և դրա հիման վրա մահճակալային ապահովվածության մասին ներկայիս պատկերացումների վերանայում՝ դեպի նրանց կրճատումը, վերափոխումը և սանիտարական նորմաների ու տեխնոլոգիական հագեցվածության բարձրացումը. գիտության և տեխնիկայի նորագույն նվաճումների ներդրման զգալի արագացում՝ շնորհիվ ստեղծվող կադրային և տեխնիկական բազայի ու նրանով պայմանավորված ներդրման ավելի արդյունավետ համակարգի. աստիճանական անցում բժշկագիտության և պրակտիկ առողջապահության որակապես նոր փոխհարաբերությունների՝ առավելապես հիմք ունենալով վերջինիս զգալիորեն աճող մեթոդական հնարավորություններն ու պահանջները. բնակչության դիսպանսերացման որակական կատարելագործում՝ շնորհիվ նրա ինֆորմացիոն ապահովման և ախտորոշիչ հետազոտությունների կազմակերպման նոր համակարգի. բուժական պրոցեսի, բժշկական կադրերի գնահատման և առողջապահության, կառավարման լայն կոմպյուտերիզացիա՝ ընդհուպ մինչև 2000 թ. հանրապետության բնակիչների բժշկական տվյալների միասնական «բանկի» ստեղծումը:

Այժմ համառոտ այն մասին, թե ինչ է նախատեսվում անել այս ուղղությամբ մոտակա տարիներին, մինչև ընթացիկ հնգամյակի վերջը: Նախ, կկառուցվեն (միմյանցից ընդամենը 100—150 մ հեռավորության վրա) ախտորոշման և հաշվողական կենտրոնների նոր շենքերը՝ համապատասխանաբար 8 հազար և 5 հազար քմ օգտակար տարածությամբ: Դա թույլ կտա կտրուկ կերպով մեծացնել նրանց հնարավորությունները և ապահովել միմյանց հետ սերտ փոխհամագործակցությունը: 1988 թ. Լենինականում, 1989 թ. Կիրովականում և 1990 թ. Ղափանում կստեղծվեն ախտորոշման կենտրոնի մասնաճյուղեր, որը հնարավորություն կընձեռի մեծ պահանջարկ վայելող որոշ հետազոտությունների կատարումը մոտեցնել և առավել մատչելի դարձնել հանրապետության հեռավոր շրջանների բնակչությանը: Մինչև 1990 թ. հան-

ռապետության բուժհիմնարկներում կընդլայնվի նաև էլեկտրոնային հաշվիչ մեքենաների ցանցը, որի շնորհիվ կընդարձակվեն բնակչության բժշկական տվյալների «բանկի» ստեղծման շրջանակները։ Ինչ վերաբերում է բժիշկների բարոյական կերպարի գնահատման և մասնագիտական առաստավորման կոմպյուտերային համակարգերին, որոնց ներդրումը խիստ կերպով կապված չէ տեղերում ԷՀՄ-ների առկայության հետ, նրանցում հանրապետության բոլոր բժիշկների և առողջապահական հիմնարկների ընդգրկումը պլանավորվում է ավարտել 1990 թ.։ 1988 թ. ընթացքում ախտորոշման կենտրոնում վերջնականապես կկազմակերպվի մանկական բաժանմունքը, ինչպես նաև կստեղծվի շարժական ախտորոշիչ կոմպլեքս, որի նշանակությունը, հատկապես հեռավոր շրջանների մանկահասակ բնակչության համար, դժվար է գերագնահատել։ Մինչև 1990 թ. կներդրվեն գիտության ու տեխնիկայի վերջին նվաճումներին համապատասխանող հետազոտման նոր մեթոդներ՝ կոմպյուտերային ռենտգեն և էմիսիոն տոմոգրաֆիա, քիմիական միացությունների առավել զգայուն՝ մասս-սպեկտրոմետրիական անալիզ, իմունաբանական նուրբ հետազոտությունների մի ամբողջ նոր խումբ և այլն։ Կենտրոնի գործունեության կատարելագործման համար սկզբունքային նշանակություն կունենա կոնսուլտացիոն բաժնի զգալի ընդլայնումը և նրան կից 30—40 մահճակալանոց ստացիոնարի կազմակերպումը, որի շնորհիվ հնարավորություն կընձեռվի ախտորոշման տեսակետից առավել դժվարություն ու հետաքրքրություն ներկայացնող հիվանդների հետազոտումն անցկացնել առավել օպտիմալ ձևով՝ համատեղելով ամբուլատոր և 2—3-օրյա ստացիոնար հետազոտման հնարավորությունները։ Տնտեսական և բժշկական զգալի արդյունք ենք ակնկալում նաև ախտորոշման կենտրոնի ստորաբաժանական անցումից դեպի բուժական հիմնարկների հետ տնտհաշվարկային գործունեություն, ինքնաֆինանսավորում և ինքնածախսածածկում, որը պլանավորվում է իրագործել 1988—1990 թթ. ընթացքում։

Բժշկատեխնիկական նոր քաղաքականությունը կուսակցության և կառավարության ներկայիս կուրսի արտացոլումն է առողջապահության բնագավառում։ Նրա հետևողական իրականացումը մեծ նշանակություն կունենա առողջապահության վերակառուցման, հանրապետության սոցիալ-տնտեսական զարգացման արագացման համար։

---



# ՏՓԽ-Ի ԱՆԴԱՄ ԵՐԿՐՆԵՐԻ ԻՆՏԵԳՐԱՑԻՈՆ ԿԱՌՈՒՅՑՆԵՐԸ

Վ. ՄՈՐՈԶՈՎ

ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԸՆԿԵՐԱԿՑՈՒԹՅԱՆ երկրների ներկայիս տնտեսական, գիտատեխնիկական, արտադրական ու առևտրական փոխադարձ կապերը, որոնք հիմնված են դրանց տնտեսությունների ինտեգրացման վրա, հասել են բարձր մակարդակի և բնութագրվում են խոշոր մասշտաբներով ու լայն ծավալով։ Դրանք նպաստում են այդ երկրների հետագա սոցիալ-տնտեսական առաջընթացին։ Կոմպլեքսային և ծավալուն տնտեսական համագործակցությունը համախմբում է եղբայրական երկրներին, ամրապնդում նրանց բարեկամությունն ու մերձեցնում ժողովուրդներին։ Սոցիալիստական ինտեգրացումը ոչ միայն միջազգային տնտեսական կապերի նոր ձև և մակարդակ է, այլև պետությունների փոխհարաբերությունների նոր հիմք, ավելի բարձր աստիճան։

Այսօր սոցիալիստական ընկերակցության երկրների կենտրոնական խնդիրն է նյութական արտադրության կարևորագույն բնագավառներում համագործակցության երկարաժամկետ ծրագրերի, հատկապես 1985 թ. դեկտեմբերին ընդունված ՏՓԽ-ի անդամ երկրների գիտատեխնիկական առաջընթացի մինչև 2000 թվականն ընկած ժամանակաշրջանի կոմպլեքսային ծրագրի, ակտիվ իրացումը։ Այս փաստաթղթերն արտացոլում են սոցիալիզմի երկրների ստրատեգիան ժողովրդատնտեսական հանգուցային պրոբլեմների լուծման գործում։ Դրանք նպատակամղված են ՏՓԽ-ի երկրների կոմպլեքսային զարգացմանը և կոչված են իրենց տնտեսական փոխգործողությունը դուրս բերելու նոր սահմանագիծ։ Այժմ միջպետական գիտատեխնիկական և արտադրական սերտ համագործակցությունը դարձել է միլիոնավոր աշխատավորների գործը, այդ երկրների սոցիալ-տնտեսական զարգացման օրգանական տարրը։ Նրանց կյանքում չկա մի ոլորտ, ուր այս կամ այն չափով չարտահայտվեր կոլեկտիվ փորձի և համակողմանի փոխգործողության բարերար ազդեցությունը։ Հատկապես դա երևում է կապիտալիստական աշխարհի տնտեսության ցնցումների ֆոնի վրա։ Այսօր սոցիալիստական երկրների ընկերակցությունն իրենից ներկայացնում է տնտեսական և գիտատեխնիկական դինամիկ համալիր, որն իր տրամադրության տակ ունի համաշխարհային արդյունաբերական արտադրանքի մոտ մեկ երրորդ մասը թողարկող արդի հասարակական արտադրության կարևորագույն ճյուղեր։

Սոցիալիզմը, որն ստեղծել է պրոլետարական համերաշխության և փոխօգնության սկզբունքների վրա հիմնված նոր տիպի միջազգային հարաբերություններ, ապահովում է ամբողջ սոցիալիստական ընկերակցության և նրա մեջ մտնող յուրաքանչյուր առանձին երկրի սոցիալ-տնտեսական համակողմանի արագացված զարգացումը, նպաստում նրանց տնտեսական մակարդակների հավասարեցմանը, օգնում անշեղորեն բարձրացնելու բնակչության բարեկեցությունը, բարելավելու մարդկանց աշխատանքի ու կենցաղի պայմանները, ապահովելու նրանց լրիվ զբաղվածությունը։

ՏՓԽ-ի երկրները, ամրապնդելով և հարստացնելով իրենց տնտեսական պոտենցիալը, դրանով իսկ ամրապնդում են նաև սոցիալիստական ընկերակ

ցության ռազմաքաղաքական հզորությունը: Վարշավյան պայմանագրի մասնակից պետությունների միացյալ զինված ուժերը նոր հասարակարգի նվաճումների, սոցիալիստական ընկերակցության ժողովուրդների աշխատանքի արդյունքների պաշտպանման համար հաստատուն կանգնած են համընդհանուր խաղաղության և միջազգային անվտանգության ապահովման դիրքերում: Սովետական պետությունը մշտապես ռեալ ուղիներ է որոնում քաղաքական և ռազմական լիցքաթափման իրականացման ուղղությամբ: Այդ կապակցությամբ հատուկ կարևորություն ունեն միջին և փոքր հեռահարության հրթիռները վերացնելու պայմանագիրը, միջազգային հարաբերություններում ուժի չկիրառման մասին սովետական առաջարկությունները:

ՍՍՀՄ-ը, ինչպես նաև ՏՓԽ-ի անդամ մյուս երկրներն ամեն կերպ զարգացնում են աշխարհի բոլոր երկրների հետ բարիդրացիական հարաբերությունները, այդ թվում և բազմակողմ հիմքերի վրա: Կոնկրետ օրինակ կարող է ծառայել ՏՓԽ-ի անդամ երկրների համագործակցությունը Ֆինլանդիայի, ինչպես նաև Մեքսիկայի, Իրաքի, Նիկարագուայի, Անգոլայի, Հարավային Եմենի, Աֆղանստանի, Մոզամբիկի, Եթովպիայի հետ: Ընդ որում նշված պետությունների հետ ՏՓԽ-ի երկրների համագործակցությունը չի սահմանափակում և չի վերացնում դրանց երկկողմ կապերը: Ընդհակառակը, բազմակողմ ձևն այս դեպքում լրացնում և հարստացնում է երկկողմ համագործակցությունն՝ ի շահ բոլոր մասնակից երկրների:

Սոցիալիզմի երկրների կոլեկտիվ փոխգործողության պլանաչափ զարգացումը գործնականում արտահայտվում է զանազան ձևերով և տարբեր ոլորտներում: Զարգանում է համագործակցությունը ժողովրդական տնտեսության տարբեր օբյեկտների կառուցման գործում: Այն իրականացվում է ՏՓԽ-ի անդամ շահագրգռված երկրների նյութական, աշխատանքային և ֆինանսական ռեսուրսների միավորման հիման վրա՝ նրանց պահանջները վառելիքի, էներգիայի, հումքի առանձին տեսակների և դրա վերամշակման նյութերի նկատմամբ առավել լրիվ ծավալով բավարարելու նպատակով: ՏՓԽ-ի անդամ երկրների կողմից համատեղ շինարարության իրականացումը կազմակերպվում է ինչպես երկկողմ, այնպես էլ բազմակողմ սկզբունքներով՝ փոխադարձ հետաքրքրություն ներկայացնող բնագավառներում:

Սոցիալիստական երկրներն ավելի քան երեք ու կես տասնամյակ առաջ արդյունաբերության արդյունահանման և վերամշակման ճյուղերում սկսել են համատեղ արտադրատնտեսական օբյեկտների ստեղծումը: Սովորաբար այսպիսի օբյեկտները կառուցվում են բնական ռեսուրսների բավարար պաշարներ ունեցող երկրների տարածքում: Այսպես, Չեխոսլովակիան դեռևս 1951 թվականից համագործակցում է Հունգարիայի հետ նրա տարածքում բոքսիտների արդյունահանման գործում: 1957 և 1958 թվականներին Չեխոսլովակիայի վարկային մասնակցությամբ Լեհաստանում արագացան ածխարդյունաբերության զարգացումն ու ծծմբի արտադրության ձեռնարկությունների շինարարությունը: Չեխոսլովակիայից համապատասխան մեքենաների ու սարքավորումների վարկային մատակարարումները փոխհատուցվել են Լեհաստանից ծծմբի և կոքսացող ածխի մատակարարումներով:

Սոցիալիստական երկրների համագործակցության կոմպլեքսային ինտեգրացիոն բնույթը հետագայում կյանքի է կոչել շահագրգռված երկրների կողմից օբյեկտների կառուցումը նաև բազմակողմ հիմունքներով: Առաջին նման կառույցներից եղան ցելյուլոզի արտադրության կոմբինատը Ռումինիայում՝ ԳԴՀ-ի, ԼԺՀ-ի և ՉՍՍՀ-ի հետ համատեղ, պղնձահանքային ձեռնարկությունները Լեհաստանում՝ ՍՍՀՄ-ի և ՉՍՍՀ-ի մասնակցությամբ, ֆոսֆորիտների արդյունահանման հանքերը ՍՍՀՄ-ում՝ ԲԺՀ-ի, ՀԺՀ-ի, ԳԴՀ-ի, ԼԺՀ-ի և ՉՍՍՀ-ի մասնակցությամբ:

Հատկապես ինտենսիվորեն է ծավալվել ՏՓԽ-ի երկրների կողմից ժողովրդատնտեսական տարբեր օբյեկտների կոլեկտիվ ստեղծումը՝ այդ երկրների կողմից ընդունված համագործակցության և ինտեգրացման երկարաժամկետ այնպիսի ծրագրերի հիման վրա, ուր ստեղծվող համատեղ կառույցներին հատուկ ուշադրություն է դարձվում: Տվյալ ասպարեզում իրացնելով նախանշված խնդիրները, ՏՓԽ-ի անդամ շահագրգռված երկրները մի շարք համաձայնագրեր են կնքել կարևոր շատ տնտեսական օբյեկտների շինարարության համար:



Դրանց թվին է պատկանում, մասնավորապես, ՍՍՀՄ-ում կառուցված Ուստ-Իլիմի ցելյուլոզի գործարանը, Կիմբաևի լեռնահարստացուցիչ կոմբինատը, երկաթապարունակ հումքի և ֆերոձուլվածքների որոշ տեսակների արդյունահանման և վերամշակման կարողությունները: Այստեղ կարելի է նաև հիշատակել Վիննիցա (ՍՍՀՄ)— Ալբերտիրշա (ՀԺՀ) էլեկտրահաղորդման բարձրավոլտ գիծը: Վիննիցա—Ալբերտիրշա ԷԲԳ-ի երկարաձգությունը 800 կմ է, որից 600 կմ-ն անցնում է ՍՍՀՄ տարածքով, իսկ 200-ը՝ ՀԺՀ-ով: Դրան կից գործում են ռելեային պաշտպանության, հակավթարային ավտոմատիկայի, հեռուստամեխանիկայի և կապի ժամանակակից կայանքներով հագեցված 3 ենթակայաններ: Վիննիցա—Ալբերտիրշա ԷԲԳ-ի շինարարության հիմնական աշխատանքները կատարվել են ՍՍՀՄ-ի և ՀԺՀ-ի կողմից: Մասնակից մյուս երկրները (ԲԺՀ, ԳԴՀ, ԼԺՀ և ՉՍՍՀ) շինարարության մեջ մասնակցության իրենց բաժինն ապահովել են անհրաժեշտ նյութերի, մեքենաների ու սարքավորումների մատակարարումներով: Այդ գիծը շահագործման հանձնելիս բարձր պահանջներ են իրացվել էլեկտրահաղորդման կառավարման, կապի և հակավթարային ավտոմատիկայի սիստեմների նկատմամբ: Էլեկտրահաղորդման կառավարումը (հոսանքափոխումը, աշխատանքի ռեժիմի փոփոխումը և այլն) իրականացվում է Պրագայում (ՉՍՍՀ) գտնվող միացյալ էներգասիստեմների կենտրոնական դիսպետչերական կառավարման (ՄԷՍԿԴԿ) համապատասխան ծառայությունների համաձայնեցված գործողություններով: Ինտեգրացիոն շինարարության օբյեկտների արժեքը 1976-ից մինչև 1986 թթ. կազմել է ավելի քան 10 մլրդ փոխադրական ռուբլի (ՏՓԽ-ի անդամ երկրների կոլեկտիվ վալյուտա): Պրակտիկան հաստատել է ժողովրդատնտեսական տարբեր օբյեկտների համատեղ շինարարության գործում ՏՓԽ-ի երկրների համատեղ ջանքերի բարձր արդյունավետությունը:

Վարկաֆինանսային ձևով առաջին խոշորամասշտաբ կոլեկտիվ կառույցը եղավ «Դրուժբա» տրանսեվրոպական նավթատարի կառուցումը ՍՍՀՄ-ից ՀԺՀ, ԳԴՀ, ԼԺՀ և ՉՍՍՀ նավթի առաքման համար: Այդ մայրուղու ընդհանուր երկարությունը կազմել է ավելի քան 5.500 կմ: Հետագայում այն հասցվել է մինչև 10 հազար կմ-ի: Նավթատարի կառուցման վերաբերյալ որոշումը պայմանավորվել է նավթի տեղափոխման այս ձևի տնտեսական մեծ շահավետությամբ, քանի որ այն 4—5 անգամ էժան է երկաթուղով և 3 անգամ՝ ջրային ճանապարհով տեղափոխելուց: «Դրուժբա» նավթատարի կապիտալ ներդրումները հատուցվեցին երեք տարում: Տրանսպորտային ծախսերի տնտեսումը կազմել է տարեկան շուրջ 300 մլն ռուբլի: Սովետական նավթի առաքումը «Դրուժբա» նավթատարով պայմաններ է ստեղծել ՏՓԽ-ի անդամ եվրոպական երկրներում՝ ՀԺՀ-ում, ԳԴՀ-ում, ԼԺՀ-ում և ՉՍՍՀ-ում նավթաքիմիական արդյունաբերության լայն զարգացման համար, հնարավորություն տվել նրանց հիմնականում բավարարելու սեփական պահանջները բենզինի, դիզելային վառելիքի, քսայուղերի նկատմամբ, ինչպես նաև կարգավորելու պլաստմասսաների, սինթետիկ կաուչուկի, քիմիական պարարտանյութերի, սինթետիկ մանրաթելերի և ժողովրդական սպառման այլ արտադրանքի արտադրությունը:

ՏՓԽ-ի անդամ շահագրգռված երկրների նույնանման խոշորամասշտաբ կոլեկտիվ կառույց է ԲԺՀ-ի, ՀԺՀ-ի, ԳԴՀ-ի, ԼԺՀ-ի, ՌՍՀ-ի, ՍՍՀՄ-ի և ՉՍՍՀ-ի կոլեկտիվ ջանքերով կառուցված Օրենբուրգ—ՍՍՀՄ արևմտյան սահման մայրուղային գազատարը: Այդ շինարարությունն իրականացնելիս կիրառվել են համագործակցության որակապես նոր մեթոդները: Մայրուղին բաժանվել է հինգ տեղամասերի, որոնք ամրացվել են ԲԺՀ-ին, ՀԺՀ-ին, ԳԴՀ-ին, ԼԺՀ-ին և ՉՍՍՀ-ին: Ռումինիան իր մասնակցությունն իրականացրել է գազատարի համար համապատասխան տեխնոլոգիական սարքավորումների գնումները ֆինանսավորելու ձևով: Շինարարության գլխավոր կապալառուն՝ ՍՍՀՄ նավթի և գազի արդյունաբերության ձեռնարկությունների շինարարության մինիստրությունը, հատուկ ստեղծված «Սոյուզնեֆտեգազստրոյ» Հ/Մ միջոցով ապահովել է գազատարի կառուցման ժամանակ բազմահազարանոց ինտերնացիոնալ կոլեկտիվի գործունեության հստակ կոորդինացումը: 1978 թվականի նոյեմբերին այդ գազատարը, որը ստացել էր «Սոյուզ» անվանումը, սկսեց գործել իր ամբողջ երեք հազար կիլոմետրանոց երկարությամբ: ԳԴՀ-ի տնտեսագետների հաշվարկներով, իրենց երկրում տարեկան ստացվող գազի քանակը մո-

ձևը, օրինակ, կիրառվում է մայրուղային գազատարների, գործարանի կառուցման և շահագործման հանձնելու ժամանակ: Այստեղ տեղի է ունենում առավել խորը ինտեգրացիոն փոխգործողություն, որը նպաստում է աշխատավորների ինտերնացիոնալ կոլեկտիվների ձևավորմանը: Մի քանի երկրների բանվորների ու մասնագետների մասնակցությունը համատեղ աշխատանքի անմիջական պրոցեսին ստեղծում է աշխատանքային համերաշխության, փոխօգնության մթնոլորտ:

Համատեղ շինարարության իրականացումը ստեղծում է բազմաձև փոխհարաբերություններ, որոնք պահանջում են համապատասխան իրավական կարգավորում: Նման համագործակցության բազմամյա պրակտիկայի ընթացքում ձևավորվել է համատեղ շինարարության կազմակերպման և իրականացման ժամանակ երկրների բազմակողմանի հարաբերությունների կարգավորման հստակ սխեմ: Նախ և առաջ այստեղ հաջողությամբ կիրառվում է իրավական մի այնպիսի ձև, ինչպիսին է գլխավոր համաձայնագիրը: Այն կնքվում է շահագրգռված երկրների կառավարությունների կողմից և նախատեսում է շինարարության կոնկրետ օբյեկտը, դրա գտնվելու վայրը, աշխատանքների ժամկետը, կողմերի բաժնեմասային մասնակցության տեսակները, ֆինանսավորման կարգը և սկզբունքային այլ հարցեր: Գլխավոր համաձայնագրերի իրացման նպատակով դրանց մասնակիցները կնքում են համապատասխան երկկողմ միջգերատեսչական պայմանագրեր, ուր կոնկրետացվում են նյութերի, սարքավորումների, շինվածքների մատակարարումների հետ կապված կողմերի պարտավորությունները, որոշվում դրանց քանակը, մատակարարումների ժամկետները, վճարումների եղանակները, կատարված աշխատանքների գնահատման մեթոդները և այլն:

Համատեղ շինարարությունը, ինչպես ցույց է տալիս բազմամյա փորձը, շահավետ է մասնակից բոլոր երկրների համար: Վարկատու երկրները երկարաժամկետ կայուն հիմքերով ապահովում են իրենց պահանջներն անհրաժեշտ արտադրանքի նկատմամբ, իսկ վարկ ստացող երկրներն ավելի արագ կերպով են լրացնում իրենց արդյունաբերական պոտենցիալը նոր ժամանակակից կարողություններով: Նշված համագործակցությունը ՏՓԽ-ի անդամ երկրներին հնարավորություն է տալիս փոխադարձ մատակարարումների հաշվին բավարարել արտադրանքի շատ տեսակների նկատմամբ իրենց ներմուծական պահանջները: Այսպես, օրինակ, քարածխի և էլեկտրաէներգիայի գծով դա իրականացվում է 100 տոկոսով, բնական գազի՝ 90, նավթի և նավթամթերքների գծով՝ ավելի քան 70—80 տոկոսով:

Ժողովրդատնտեսական օբյեկտների կոլեկտիվ կառուցումը նպաստում է ՏՓԽ-ի անդամ երկրների կոնկրետ կազմակերպությունների ու ձեռնարկությունների միջև անմիջական տնտեսական կապերի ամրապնդմանն ու խորացմանը, հնարավորություն տալիս առավել լրիվ օգտագործել աշխատանքի միջազգային սոցիալիստական բաժանման առավելությունները: Ժողովրդատնտեսական օբյեկտների համատեղ շինարարությունը հաշվի է առնում մասնակից բոլոր երկրների շահերն ու հնարավորությունները, քանի որ հարաբերությունները նրանց միջև կառուցվում են սոցիալիստական ինտերնացիոնալիզմի, լիարժեք իրավահավասարության, կամավորության, ընկերական փոխօգնության և փոխշահավետության միջպետական անսասան սկզբունքների վրա: Ի տարբերություն կապիտալիզմի պայմաններում տեղ գտած շահամոլությունը, սոցիալիստական երկրների ժողովրդատնտեսական փոխհարաբերությունները հետևողականորեն ապահովում են դրանց սոցիալ-տնտեսական զարգացման արագացված առաջընթացը:

«Ընթանալով վերակառուցման կուրսով,— ՏՓԽ-ի 43-րդ նստաշրջանում նշեց Ն. Ի. Ռիժկովը,— Սովետական Միությունը ձգտում է տնտեսական և կազմակերպական-իրավական բարենպաստ պայմաններ ստեղծել եղբայրական երկրների ժողովրդական տնտեսության հետ մեր էկոնոմիկայի խոր ինտեգրացման համար: Մենք ելնում ենք այն բանից, որ այդ կուրսի հետևողական իրականացումը ռեալ օգուտ կտա ոչ միայն Սովետական Միությանը, այլև ՏՓԽ-ի մյուս երկրներին»:



# «ԹՈՒՐՔԻԱՅԻ ՁԱՅՆ». ԻՆՉԻ՞ ՄԱՍԻՆ Է ԱՅՆ

Ե. ԳՐԱՆՏ

ՀՆՈՒՄ, ԵՐԲ ԽՈՍՔ ԷՐ ԼԻՆՈՒՄ ձայնի մասին, ապա նկատի էր առնվում երգասացության դյութիչ արվեստը: Բայց մեր ժամանակ այդ բառը ստացել է նաև բացասական իմաստ. հակիրճության համար այդպես ենք անվանում Արևմուտքի երկրներում ստեղծված ռադիոկայանները՝ մարդկանց գիտակցությունը ապակողմնորոշողներին ու մոլորեցնողներին, որոնք օգտագործվում են քայքայիչ պրոպագանդայում: Դրանք ուղղված են ամբողջ աշխարհին և ամենից առաջ՝ ՍՍՀՄ-ին ու մյուս սոցիալիստական երկրներին: «Ձայները» ունեն իրենց «երգերը»՝ կախված այն երկրի առանձնահատկությունից, որի համար հաղորդում են, սակայն «կոմպոզիտորը» մեկն է՝ հակակոմունիզմը:

Այդ երգչախմբում է նաև «Թուրքիայի ձայնը», որն ամեն օր Սովետական Միության համար ռուսերեն լեզվով հաղորդումներ է տալիս: Նրա «խաղացանկը» բավականին բազմազան է. այստեղ կան և՛ ժամանակակից իրադարձություններ, և՛ էջեր պատմությունից, թուրք պետական գործիչների կենսագրություններ, տուրիստական ուղևորությունների ռեկլամներ: «Թուրքիայի ձայնի» գլխավոր թեմաներից մեկը օսմանյան կայսրության պատմությունն է, նրա «վերաիմաստավորումը», «նոր» մեկնաբանությունը: Եվ դա անցյալի, կորցրածի հանդեպ պարզապես կարոտ չէ, այլ պանթուրքիզմի և պանիսլամիզմի հետադիմական դրոշը վերստին բարձրացնելու նկրտում: Ունկնդիրներին «Թուրքիայի ձայնը» ներշնչում է, թե իբր օսմանյան կայսրությունում տիրել է խաղաղություն, բոլոր ժողովուրդները բարգավաճել են, և եթե նրանցից շատերը գոյություն ունեն և շարունակում են իրենց պատմությունը, ապա, պարզվում է, դա թուրքական կառավարողների հոգատարության արդյունքն է: Հիացմունքով հաղորդվում են նաև թուրքական սուլթանների զավթողական արշավանքների «հոբելյանական» տարեթվերը, փառաբանվում նրանց «իմաստնությունը» և «արիությունը», տրվում են օտար երկրներ նվաճելու մանրամասն պատկերներ («Թուրքիայի ձայնի» արտահայտությամբ դրանք դառնում էին «թուրքական») ... Այս ամենը ամրապնդվում է նաև թուրքերի առասպելական նախահայր Օղուզի՝ այրվող կապույտ աչքերով մարդանման գայլի մասին պատմող ավանդազրույցներով, որը նվաճել է բոլոր երկրները և ստեղծել Ասիայից մինչև Միջերկրական ծով տարածվող համաշխարհային կայսրություն («Մեծ Թուրան»)... «Թուրքիայի ձայնը» պնդում է, որ նա «իրական անձ է», բուն «թուրք ժողովրդի պատմությունը»...

Իսկ ի՞նչ է ասվում օսմանյան կայսրությունում արաբների, հայերի, բուլղարների, հույների, վրացիների, քրդերի, հարավսլավցիների և մյուս ստրկացված ժողովուրդների անվերջ հուզումների, ապստամբությունների, ազգային-ազատագրական շարժումների մասին: «Թուրքիայի ձայնը» այդ պրոցեսները բացատրում է... դրսից կատարվող սադրանքներով, արտասահմանյան տերությունների, առանձնապես Ռուսաստանի գործողություններով:

Մենք չենք պատրաստվում ո՛չ հերքելու, ո՛չ էլ արդարացնելու արևմտյան երկրների ու ցարական Ռուսաստանի զավթողական ձգտումները: Անցած պատմության մեջ տիրապետում էին գիշատչական բարքեր: Բայց դրանք առաջին հերթին վերաբերում են օսմանյան կայսրությանը, որտեղ իշխում էր ազգային և սոցիալական ճնշումը ամենադաժան ձևերով: «Թուրքիայի իշխանության տակ,— դեռևս ժամանակին ասել է Հեգելը,— չի հայտնվել որևէ երգիչ... Արտաքին քաղաքա-

ռազմական հանցագործներ Թալեաթը, Էնվերը, Ջեմալը ու նրանց նմանները հայտարարվում են ազգային հերոսներ, հավերժացվում է նրանց հիշատակը: Այդ ոճրագործների պատվին կառուցվում են նույնիսկ դամբարաններ: Իսկ վերջերս Թալեաթին նվիրված բազմասերիանոց կինոնկար թողարկվեց:

Նման սրբապղծություն դժվար է պատկերացնել որևէ քաղաքակիրթված երկրում: Թուրքիայի կառավարող շրջանները, ըստ երևույթին, անհրաժեշտ հետևություններ չեն արել պատմության դասերից և իրենց գործողություններով հայ առանձին երիտասարդների խմբերի դրդում են Արևմուտքում թուրք պաշտոնական անձանց նկատմամբ դիմելու տեռորիստական քայլերի: Ընդ որում նրանք չեն տեսնում իրենց մեղավորությունը, այլ պարտադիր կերպով որոնում են օտար ձեռքեր, անշուշտ, բացահայտորեն ակնարկելով «Մոսկվայի ձեռքը»:

Դեռևս 1948 թ. ՄԱԿ-ը ընդունել է հատուկ կոնվենցիա «Ցեղասպանության հանցագործությունը կանխելու և դրա համար պատժի մասին»: Թուրք կառավարողները, պաշտպանության տակ առնելով երիտթուրքական ռազմական հանցագործներին, դրանով իսկ ստանձնում են ծանր պատասխանատվություն, մարտահրավեր նետում միջազգային հասարակայնությանը, ՄԱԿ-ի բոլոր սկզբունքներին, որի անդամ է նաև Թուրքիան: Անցյալի դասերը մոռանալը վտանգավոր է: Ցեղասպանության զոհերի հիշատակը միաժամանակ զգոնության կոչ է:

Պանթուրքական և պանիսլամական քաղաքականությունը Թուրքիայի կառավարող շրջաններին չափազանց հեռու է տարել: Այդ մասին է վկայում նաև վերջին ժամանակներս թուրքական կառավարող շրջանների սանձազերծած հակաբուլղարական հիստերիան, որի մեջ ակտիվորեն ներգրավվել է «Թուրքիայի ձայնը» ևս: Էլ ինչպիսի՜ մեղադրանքներ ասես, որ չեն թափում սոցիալիստական Բուլղարիայի գլխին: Գրեթե ամեն օր «Թուրքիայի ձայնը» շոշափում է այդ թեման և, որպես կանոն, ավարտում լուտանքներով ու սպառնալիքներով...

Նրան դավաճանում է տարրական օբյեկտիվության զգացումը, նա դիտավորյալ կերպով խուսափում է ասել ճշմարտությունը 500-ամյա օսմանյան լծի ողբերգական հետևանքների մասին, երբ մասսայական կարգով բռնությամբ դավանափոխ էին արվում բուլղարացիները և նրանց վզին էր փաթաթվում իսլամը: Փոխվում էին ազգանունները, քաղաքների, գյուղերի անվանումները, արմատավորվում էին գեղեցիկ կանանց ու աղջիկներին հարեմներ քշել-տանելու բարբարոսական հայտնի բարքերը, իսկ պատանիներին, այսպես կոչված, «արյան հարկով» (դևշիրմե) խլում էին ծնողներից և հատուկ զինվորական ուսուցումից հետո ընդունում իրենց վայրագությամբ ու դաժանությամբ աչքի ընկնող ենիչերիների զորքերի մեջ: Դրա հետևանքով Բուլղարիան զրկվեց իր արու սերնդի ոչ պակաս 20 տոկոսից (տե՛ս «Болгария», 1987, март): «Պաշտոնական հարկային գրանցումների վերլուծությունը,— գրում է Վենցել Ռայչևը,— ցույց է տալիս, որ ստրկության միայն առաջին հարյուր տարում վերացվել է (ջարդվել, դավանափոխ արվել, արևելյան շուկաներում վաճառվել) միջնադարյան բազմամիլիոն Բուլղարիայի ամբողջ քաղաքային և գյուղական բնակչության կեսից ավելին: Դա իսկական աղետ էր մի ազգության համար, որը հայտնվեց տառացիորեն ժողովրդագրական կոլապսի մեջ» («Болгария», 1987, март, стр. 20):

Դժբախտաբար, օսմանյան լծի և բուլղար բնակչության մի մասի բռնի ասիմիլյացիայի հետքերը մինչև օրս իրենց զգացնել են տալիս երկրի մի շարք շրջաններում, և Բուլղարիայի կառավարությունը հարկադրված է միջոցներ ձեռք առնել դրանք հաղթահարելու համար: Ահա հենց սա է չարացնում ու հավասարակշռությունից դուրս բերում «Թուրքիայի ձայնին», որը մասսայական ինֆորմացիայի թուրքական մյուս միջոցների օրինակով օրեցօր հավատացնում է, թե բոլոր մահմեդական-բուլղարները թուրքեր են...

Բուլղարիայի հասարակայնությունը վճռականորեն դատապարտել է այդ զրպարտությունները: Ահա քաղվածք իրենց անունները վերականգնած մի խումբ բուլղարացիների նամակից՝ ուղղված թուրքական պրեմիեր-մինիստրին. «Մենք ամենավճռական բողոք ենք հայտնում այն բանի կապակցությամբ,— ասվում է նամակում,— որ Դուք, լինելով Թուրքիայի պրեմիեր-մինիստրը, մեր հայրենիքի՝ Բուլղարիայի Ժողովրդական Հանրապետության ներքին գործերին և մեր՝ իրենց անունները վերականգնած բուլղարացիներիս գործերին միջամտելու սիստեմատիկ փորձեր եք անում... Այն փաստը, որ մեզանից ոմանք դավանում են մուսուլմանական կրոնը, մեզ թուրքեր համարելու պատճառ չէ: Այդ ո՞ր իրավունքով եք Դուք իրար խառնում մահմեդականություն դավանող բուլղարացիների կրոնական զգացմունքները և ազգային զգացմունքները:

Դուք սիրում եք զանազան միջազգային համաժողովներում հարցեր դնել, բայց չե՞ք կարող մեզ պատասխանել, թե ի՞նչ կատարվեց Թուրքիայում ապրող հազարավոր բուլղարացիների հետ: Ինչպիսի՞ն է հայերի, հույների, քրդերի, արաբների, ասորիների, ալբանացիների և մյուս ժողովուրդների ճակատագիրը ձեր երկրում: Ինչպե՞ս են նրանք պահպանում իրենց ազգային պատկանելությունը թուրքական սահմանադրության 66-րդ հոդվածի առկայության պայմաններում, որի համաձայն Թուրքական Հանրապետության յուրաքանչյուր քաղաքացի թուրք է» (София-пресс, 1985, стр. 5—9):

Բերենք նաև օսմանյան կայսրության ամենամեծ վեզիր Միդհաթ փաշայի հեղինակավոր կարծիքը: 1878 թվականին «Ֆրանսիայի և արտասահմանյան երկրների գիտական տեսություն» ֆրանսիական ամսագրում նա գրել է. «Հարկ է նկատի առնել այն բանը, որ բուլղարների մեջ, որոնց նկատմամբ ցուցաբերվում է այնպիսի աշխույժ հետաքրքրություն, կան միլիոնից ավելի մահմեդականներ: Ընդունված է համարել, որ այդ մահմեդականները եկել են Ասիայից, որպեսզի հաստատվեն Բուլղարիայում: Իսկ իրականում նրանք մահմեդականության դիմած բուլղարացիների ժառանգորդներն են, որոնք մահմեդականությունն ընդունել են երկիրը նվաճելու ժամանակ և հետագայում: Նրանք՝ այդ երկրի, այդ ժողովրդի զավակները, ծագումով այնտեղից են: Նրանց մեջ կան և այնպիսիք, որ խոսում են միայն բուլղարերեն: Այդ մարդկանց հարազատ օջախներից կտրելը, նրանց արտաքսելը, իմ կարծիքով, ամենաանմարդկային գործողությունն է» (**Ո՞վ և ինչո՞ւ է անհանգստանում Բուլղարիայի մահմեդականների համար** (София-пресс, 1985, стр. 11): Իսկ ահա թե ինչ է հայտարարել թուրքական «Հյուրիեթ» թերթի թղթակցի հետ ունեցած հարցազրույցի ժամանակ Սիրիայի Արաբական Հանրապետության Մինիստրների խորհրդի նախագահ Աբդուլա Ռաուֆ ալ Քասմը. «Բուլղարիայում մահմեդականներն ամենից առաջ բուլղարացիներ են: Ինչպես քրիստոնյաները Սիրիայում՝ սիրիացիներ» (Обозрение.— София-пресс, 1986, стр. 7):

Այս հարցի առնչությամբ չի կարելի չհիշել նաև 1918—1921 թվականներին Անդրկովկասում սովետական իշխանության հաստատման ժամանակ տեղի ունեցած մի քանի իրադարձություններ: Ռազմական ինտերվենցիա կատարելով՝ թուրքական զորքերի հրամանատարությունը փորձում էր պանթուրքիզմի և պանիսլամիզմի ոգով կամայականորեն վերաձևել երկրամասի ազգային-էթնիկական սահմանները, զավթել մի շարք ի սկզբանե վրացական շրջաններ, այդ թվում նաև Բաթումը, որտեղ ապրում էին «մահմեդականացված» շատ վրացիներ: Անշուշտ, այդ ամենը նա կատարում էր քողարկվելով իր «արյունակից եղբայրների» ճակատագրի նկատմամբ «հոգատարությամբ»: Բայց հարկ եղավ հակահարված տալ զավթողական այդ լպիրշ հավակնություններին, կարմիր բանակի զորամասերը ստիպված էին նույնիսկ ռազմական գործողություններ սկսել (այս հարցի մասին ավելի մանրամասն տե՛ս А. Б. Кадишев. Интервенция и гражданская война в Закавказье. М., 1960): Իսկ ինչ պատահեց Թուրքիայում հայտնված վրացական շրջաններին՝ հանրահայտ է: Նրանք դավանափոխվում են: Այս դեպքում «Թուրքիայի ձայնը» ամենևին չի հիշեցնում ազգային ինքնորոշման իրավունքի մասին:

Հակաբուլղարական կամպանիայի նպատակը պարզ է: «Թուրքիայի ձայնը», ինչպես նաև Թուրքիայի կառավարողները ուզում են ոչ ավելի, ոչ պակաս, քան դավանափոխ մնացած բուլղարացիներին անխախտ պահպանել որպես հատուկ էթնիկական խումբ և խանգարել իրենց հարազատ ժողովրդի հետ նրանց միավորմանը: Չէ որ այդպես առիթ կլինի Բուլղարիայի ներքին գործերին միջամտելու համար, իսկ ժամանակի ընթացքում գուցե հնարավոր լինի ինքնավարություն և նույնիսկ «անկախ» պետություն (Կիպրոսի օրինակով) ստեղծելու համար: Ահա թե ուր են հարվածում թուրք պանթուրքիստները: Բայց հիմա ժամանակներն այլ են: Բուլղարիան արդեն այն երկիրը չէ, որին հնարավոր լիներ տրորել և անարգել: Այսօր նա սոցիալիստական հզոր ընկերակցության կազմում է և վստահորեն կառուցում է նոր հասարակություն:

Եթե դատենք ըստ թուրքական պաշտոնական տեղեկագրքերի, ապա Թուրքիայում չկա այնպիսի ազգային փոքրամասնություն, ինչպիսին քրդերն են: Մոտ 10 միլիոն քրդ բնակչությունը հայտարարվել է լեռնաբնակներ, թեպետ Թուրքական Հանրապետության կազմավորման սկզբնական շրջանում ճանաչվում էր ինքնորոշման նրա իրավունքը: Դա արտացոլվեց նաև 1920 թ. ապրիլի 26-ին Վ. Ի. Լենինի անունով Քեմալ Աթաթուրքի ուղարկած նամակում, որում պատրաստակամություն էր հայտնվում «թուրքական» Հայաստանին, Քրդստանին, Լազիստանին, թուրք-արաբ բնակչությամբ խառը շրջաններին իրավունք տալ, որպեսզի իրենք որոշեն իրենց բախտը (տե՛ս Документы внешней политики СССР, т. 2, М., 1958, стр. 554):

Ինչպես ցույց տվեցին հետագա իրադարձությունները, դա խաբեություն էր և հետապնդում էր թուրք ժողովրդի համար այդ դըժվարին ժամին սովետական կառավարությունից աջակցություն ու օգնություն ստանալու նպատակ: Նոր Թուրքիայի կառավարող շըրջանները չկատարեցին նաև Արևմուտքի իմպերիալիստների դեմ պայքարելու իրենց խոստումը, ընդհակառակը, նրանց հետ սովետական հանրապետությանն ուղղված դավադրության գնացին, նորից վեր պարզեցին մեծապետական պանթուրքիստական շովինիզմի

դրոշը, ազգային փոքրամասնությունների, այդ թվում և քրդերի նկատմամբ վարեցին ջարդարարական ասիմիլյատորական քաղաքականություն, դաժանորեն ճնշեցին իրենց ազգային իրավունքների պաշտպանության նպատակով նրանց ամեն տեսակի ելույթները:

Եթե թուրքական պրոպագանդան հիմա խոսում է քրդական պրոբլեմի մասին, ապա իր մեկնաբանությամբ: «Թուրքիայի ձայնը» ամեն կերպ դատափետում է քրդական ազատագրական շարժումը, այն որակում որպես «սպառակտողական բանդիտական խմբերի» գործողություններ: Նա հավանություն է տալիս քուրդ ժողովրդի դեմ թուրքական կառավարության կողմից կիրառվող պատժիչ միջոցներին, ինքնորոշման նրա իրավունքների ճնշմանը: «Թուրքիայի ձայնը» նախազգուշացնում է. «Թուրքիան այսուհետև էլ գործելու է նման եղանակով...»:

Սակայն բնորոշ է մի այլ բան: Երբ «Թուրքիայի ձայնը» խոսում է կիպրոսցի-թուրքերի մասին, ապա մշտապես ընդգծում է ազատության, - ինքնորոշման նրանց սրբազան իրավունքը... Միանգամայն ճիշտ է: Բայց մի հատուկ իմաստ կա, ես կասեի՝ ենթատեքստ, որ դրվում է մեր ժամանակ ընդհանուր ճանաչում գտած սկզբունքների մեջ, որոնց հիման վրա կառուցվում են արդի միջազգային հարաբերությունները և բուն Միավորված ազգերի կազմակերպությունը:

Ինչպես հայտնի է, 1974 թ. Թուրքիան, ըգտվելով Կիպրոսի Հանրապետության ներքին իրադարձություններից և միջազգային արված հակառություններից, ՄԱԿ-ի անդամ այդ սուվերեն պետության դեմ ինտերվենցիա կատարեց՝ cրը ցերեկով ափ հանելով տասնյակ հազարավոր զինվորների: «Արյունակից եղբայրների» իրավունքները պաշտպանելու պատրվակով՝ թուրք ինտերվենտները սկսեցին կղզու մասնատումը, որի հետևանքով տեղի թուրքական համայնքի հիման վրա ստեղծեցին ինքնուրույն, ավելի ճիշտ, մարիոնետային պետություն, իսկ այնուհետև նրան փաստորեն վերածեցին իրենց պրովինցիայի: Թուրքիայի պրեզիդենտ Էվրենը բացահայտորեն Կիպրոսը հռչակել է «Թուրքիայի մայրցամաքային մասի շարունակությունը» (Проблемы мира и социализма, 1934, № 12, стр. 64): Ըստ երևույթին դա է ցանկացել ընդգծել նաև թուրքական պրեմիեր Օզալը՝ 1986 թ. ամռանը կղզի կատարած իր այցը նվիրելով XVI դարում թուրքերի կողմից Կիպրոսի գրավման տարեթվին:

Անա թե ինչ է նշանակում ազատության և ինքնորոշման իրավունքը «Թուրքիայի ձայնի» լեզվով: Սակայն դա իմպերիալիզմ է, և այն արդեն մեկ անգամ չէ, որ դատապարտվել է ՄԱԿ-ի գլխավոր ասամբլեայի և անվտանգության խորհրդի որոշումներով: Թուրք ագրեսորները ոչ մի կերպ հաշվի չեն առնում միջազգային իրավակարգը՝ այդ կարևոր ռեգիոնում ստեղծելով խիստ վտանգավոր իրավիճակ: Ավելին, Թուրքիան անընդհատ սպառնում է նաև Հունաստանին՝ առաջ քաշելով շովինիստական պահանջներ նրա վաղեմի տերիտորիաների, Էգեյան ծովի, անգամ Միջերկրական ծովի նկատմամբ: Իր հաղորդումներից մեկում «Թուրքիայի ձայնը» հիշեցրեց անցած ծովային մարտերի մասին, երբ, նրա խոսքերով, «Միջերկրական ծովը դարձավ թուրքական...»: Իսկ վերջերս հունական մի շարք կղզիների շուրջը գտնվող ծովային շելֆի օգտագործման պատճառով Հունաստանի ու Թուրքիայի միջև հարաբերությունների բարդացման կապակցությամբ, երբ երկու կողմերի զինված ուժերը մարտական պատրաստության էին բերվել, «Թուրքիայի ձայնը» հանդես եկավ սպառնացող հայտարարություններով և հոխորտաց իր երկրի գերազանցությամբ, որ իբր, 50 միլիոնանոց Թուրքիային ինչ կարող է անել 10 միլիոնանոց Հունաստանը... Իսկ երբ ՆԱՏՕ-ի շտաբի օգնությամբ կոնֆլիկտը հարթվեց, ապա «Թուրքիայի ձայնը» երկրի կառավարող շրջանների շովինիստական ձգտումներին տվեց գեոպոլիտիկայի ձև՝ հայտարարելով, որ շուտով թուրք բնակչությունը կհասնի 70 միլիոնի և հարկ կլինի նրան ունել... Անհրաժեշտ կլինի տերիտորիա՝ «կենսական տարածություն...»:

Այժմ համառոտակի նշենք «Թուրքիայի ձայնի» հակասովետական պրոպագանդայի որոշ առանձնահատկությունները: Առաջին հայացքից «Թուրքիայի ձայնը» դիմում է պարզունակ հակասովետական պրոպագանդայի: Բայց բավական է «փոխվի կոնյունկտուրան» և նրան համակում է հակասովետական հիստերիան: Նկատվել է, որ դա հատկապես հաճախ է տեղի ունենում, երբ Թուրքիան ԱՄՆ-ի հետ նոր փոխառությունների և ռազմական օգնության վերաբերյալ ընթացիկ սակարկություն է անում: «Թուրքիայի ձայնը» սկսում է ճիգ ու ջանք թափել հավատարիմ հպատակի զգացմունքներ ցուցադրելու համար՝ ընդգծելով Թուրքիայի կարևոր դերը ՆԱՏՕ-ի հարավային թևում և նրա ամրապնդման անհրաժեշտությունը: Եվ ահա գործի են դրվում «սովետական սպառնալիքի», «Բոսֆորն ու Դարդանելը զավթելու ՍՍՀՄ-ի ձգտման» վերաբերյալ ծեծված առասպելները:

Հենց այդ պատճառով էլ արդեն նախապես մշակված սցենարով ընթացան նաև մինչև 1990 թ. պաշտպանության և էկոնոմիկայի բնագավառներում համագործակցելու վերաբերյալ ամերիկա-թուրքական համաձայնագիրը երկարացնելու բանակցությունները: Մի բան ևս: Երբ թուրք ներկայացուցիչները ժամանում են ԱՄՆ, ապա ջանում են իրենց «վարկատուներին» հանգստացնել մահմեդականության գործոնի հարցում, հավաստացնել, որ Թուրքիան նվիրված է լաիցիզմի սկզբունքներին, պետական կազմակերպության աշխարհիկ բնույթին, որ բանակը թույլ չի տա երկրի մահմեդականացում և այլն: 1987 թ. մարտին տեղի ունեցած պրես-կոնֆերանսում այդ բանը հավաստեց պրեզիդենտ Էվրենը. «Ես մինչև վերջ հավատացել եմ և պայքարել լաիցիզմի սկզբունքների համար»: Իսկ իրականում թուրք ղեկավարները երկրում անընդհատ ամրապնդում են մահմեդական հոգևորականության դիրքերը, նրա միջոցով ուժեղացնում են կապերը միջազգային մահմեդական ռեակցիայի հետ՝ կոմունիզմի, առաջադիմական ազատագրական շարժումների դեմ պայքարելու համար: 1987 թ. մարտին Ստամբուլում տեղի ունեցավ Զարգացման մահմեդական բանկի դիրեկտորների խորհրդի ամենամյա 11-րդ նիստը, որի մեջ մտնում են իսլամական կոնֆերանսի կազմակերպության 44 անդամ-երկրներ (այս մասին մանրամասն հաղորդել է «Թուրքիայի ձայնը»): Նրա մասնակիցները առաջ քաշեցին «Համամահմեդական շուկա», «Համամահմեդական ինֆորմացիոն կենտրոն» ստեղծելու հեռուն գնացող պլաններ և այլն: Այլ կերպ ասած, աշխարհը մասնատել ըստ կրոնական սկզբունքի, դրանով իսկ է՛լ ավելի բարդացնել միջազգային իրադրությունը, վերականգնել դարավոր կրոնական երկպառակությունները: Հենց սրանք են ընկած «համաշխարհային մահմեդական հեղափոխության» կազմակերպիչների ու ոգեշնչողների մտադրությունների հիմքում, որոնք ժողովուրդներին սպառնում են նոր «սրբազան պատերազմով»՝ ջիհադով:

Իր լուման այստեղ էլ է ներդնում «Թուրքիայի ձայնը»: Բայց նա, մեղմ ասած, չի ընդունում իրականությունը, արդի աշխարհի իրողությունները: Նա բացահայտորեն չի ուզում ըմբռնել, որ եկել է ուժի վրա հույս դնելու ինքնապաշտպանության քաղաքականությունից հրաժարվելու ժամանակը, որ վարում են Թուրքիայի կառավարող շրջանները իմպերիալիստական ռեակցիայի հետ դաշնակցած: Հենց նրանց մեղքով է երկիրը վերածվել Մերձավոր արևելքում ՆԱՏՕ-ի գլխավոր պլացդարմի, այստեղ տեղավորված են միջուկային զենքով հագեցած ամերիկյան բազմաթիվ ռազմական բազաներ: Միլիտարիզմի սանձարձակությունը, ռազմական ծախսերի բեռը է՛լ ավելի են սրել ճգնաժամային երևույթները էկոնոմիկայում, իրենց զգացնել են տալիս ինֆլյացիան, աճող զանգվածային գործազրկությունը: Միլիոնավոր աշխատավոր թուրքեր մի կտոր հաց հայթայթելու նպատակով ստիպված են արտագաղթել Արևմտյան Եվրոպայի երկրներ: 1980 թվականի պետական հեղաշրջումից հետո հաստատված ռազմաֆաշիստական վարչակարգը շարունակում է գործել ամբողջ թափով, դեմոկրատական ուժերն անընդհատ ենթարկվում են դաժան պատիժների, հազարավոր առաջադեմ գործիչներ տանջվում են բանտերում՝ ենթարկվելով վայրագ խոշտանգումների: «Այսօր Թուրքիան,— նշվում է երկրի կոմկուսակցության VI պլենումի (1986 թ.) փաստաթղթերում,— արգելքների երկիր է: Նրա քաղաքացիները չեն կարող բացեիբաց արտահայտվել՝ չերկյուղելով իրենց կյանքի համար... Այսօր Թուրքիան մի երկիր է, որտեղ ծաղկում է պետական տեռորիզմը: Նրա քաղաքացիները ենթարկվում են կամայական ձերբակալությունների, իրենց համոզմունքների պատճառով դառնում տանջանքների, սպանությունների, խեղման զոհեր» (Проблемы мира и социализма. 1987, № 1, стр. 82):

Այդ մասին «Թուրքիայի ձայնը լռում է: Եվ չի կարելի օգտագործել փրկարար «առայժմ» բառը, «քանի դեռ լռում է»: Նա չի պատրաստվում խոսել թուրք ժողովրդի ձայնով:

Եվ ահա ՀԿԿ Կենտկոմը և ՀՍՍՀ Մինիստրների խորհուրդը 1965 թվականին որոշում ընդունեցին հրատարակելու բազմահատորյա Հայկական սովետական հանրագիտարան։ Սկսվեց լայն նախապատրաստական աշխատանք և ստեղծվեց ՀՍՀ գլխավոր խմբագրություն՝ Հայկական ՍՍՀ ԳԱ պրեզիդենտ, ակադեմիկոս Վ. Համբարձումյանի գլխավորությամբ։ Խմբագրության եռանդուն ջանքերով և մեր գիտնականների ու շատ այլ մասնագետների ուժերով 1974-ին լույս տեսավ ՀՍՀ-ի I հատորը, որին այնուհետև պարբերաբար հետևեցին մյուսները։ Խորհրդանշական է, որ Հոկտեմբերյան հեղափոխության 70-ամյա հոբելյանի շեմին հայ ընթերցողն ստացավ XII հատորը։ Դրանով ավարտվում է ՀՍՀ հիմնական հատորների (այբբենական շարադրանքով) հրատարակությունը։ Նախապատրաստվում է ՀՍՀ-ի օրգանական մասը կազմող «Սովետական Հայաստան» հատորի (թեմատիկ շարադրանքով) լույս ընծայումը, որը կթարգմանվի ռուսերեն։

Այդպիսով, իրականացավ հայ ժողովրդի դարավոր երազանքը՝ ստեղծվեց Հայկական բազմահատորյա ամբողջական հանրագիտարան, որը սերունդներին հանձնվող մնայուն հրատարակություն է, իր էությամբ իմաստության գանձարան։ Այն նշանավորում է հայ ժողովրդի գիտական մտքի ու ողջ մշակույթի զարգացման մի նոր՝ ավելի բարձր աստիճան և մեր հանրապետության հոգևոր կյանքի վերջին երկու տասնամյակի ամենանշանակալից երևույթներից է։

Սովետական և ընդհանրապես սոցիալիստական երկրների հանրագիտարաններն արմատապես տարբերվում են բուրժուական հանրագիտարաններից, որոնք նեղ դասակարգային տեսանկյունից են մեկնաբանում դեպքերն ու երևույթները։ Մինչդեռ ճշմարիտ կարող են լինել միայն օբյեկտիվ իրողություններից ելնող, դրանք գիտականորեն լուսաբանող հանրագիտարանները։ Հենց այդպիսին են մարքս-լենինյան մեթոդաբանությամբ ու գաղափարայնությամբ համակված և բնական ու հասարակական գիտությունների նվաճումները բովանդակող հանրագիտարանները։ Սովետական հանրագիտարաններն ամփոփում են այն լավագույնը, ինչ ձեռք է բերել մարդկային միտքը դարերի ու հազարամյակների ընթացքում և միաժամանակ մարմնավորում այն արմատական որակական փոփոխությունը, որը նշանավորվեց Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակով։ Սովետական, սոցիալիստական հանրագիտարանները կոչված են նպաստելու աշխատավոր մասսաների կոմունիստական դաստիարակությանը, մարդկանց գիտական աշխարհայացքի կազմավորմանը, նրանց մտավոր ու կուլտուրական պահանջների բավարարմանը, հասարակության ընդհանուր առաջընթացին։

Հայկական սովետական հանրագիտարանը՝ օգտագործելով մինչ այդ եղած և հատկապես Սովետական մեծ հանրագիտարանի ուսանելի ու հարուստ փորձը, իր 12 ստվարածավալ հատորներում զետեղել է շուրջ 40 հազար տերմին-հոդվածներ, որոնք նվիրված են ամենաբազմազան հարցերի։ Նկատենք, որ ՀՍՀ-ն համընդհանուր (ունիվերսալ) տիպի հանրագիտարան է և կոչված է տեղեկություններ հաղորդելու մարդկության մշտահոլով պատմության, տիեզերքի, բնության, աշխարհի բոլոր երկրների մասին։

ՀՍՀ-ում ցայտուն կերպով տրված են ՍՄԿԿ ստեղծման ու նրա բազմաբեղուն գործունեության, Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության, ՍՍՀՄ կազմավորման ու հետագա զարգացման, սոցիալիստական շինարարության պատմությունը, լուսաբանված են կուսակցության ու սովետական կառավարության ներքին ու արտաքին քաղաքականությունը, խաղաղության համար պայքարը։

Հատուկ ուշադրություն է դարձված պրոլետարական ու սոցիալիստական ինտերնացիոնալիզմին, ՍՄԿԿ լենինյան ազգային քաղաքականությանը, ՍՍՀՄ ժողովուրդների եղբայրական բարեկամությանը, արտացոլված են բոլոր միութենական ու ավտոնոմ հանրապետությունների, մարզերի, երկրամասերի, ազգային օկրուգների տնտեսական ու կուլտուրական վիճակը, սերտ համագործակցությունը։ Շեշտված է, որ սովետական ժողովուրդների անխախտ միաբանությունն իր ուժն ու կենսունակությունը դրսևորել է ինչպես խաղաղ շինարարության տարիներին, այնպես էլ պատերազմական փորձությունների ժամանակ։

Հանրագիտարանում պատշաճ տեղ է հատկացված բոլոր սոցիալիստական երկրներին, նրանց տնտեսական ու կուլտուրական առաջընթացին և հարաճուն համագործակցությանը։ Լայնորեն լուսաբանված են միջազգային կոմունիստական ու բանվորական, ազգային-ազատագրական շարժման հարցերը, խաղաղության համար մղվող պայքարն ամբողջ աշխարհում։

Ընթերցողն անհրաժեշտ տեղեկություններ կգտնի նաև կապիտալիստական երկրների մասին, կապիտալիզմի սիստեմի ընդհանուր ճգնաժամի և նրա փուլերի, բուրժուական երկրներում սրվող սոցիալական հակասությունների և դասակարգային պայքարի մասին։

Մեծ տեղ է տրված հասարակական ու բնական գիտություններին, բնության ու սոցիալական զարգացման օրենքների, պատմական իրադարձությունների ու դեպքերի լուսաբանմանը։ Հատուկ ուշադրություն է դարձված մարքսիզմ-լենինիզմին ու նրա դասականների գործունեությանը։ Ընթերցողների տեսադաշտից դուրս չեն մնում ականավոր գիտնականները, գրողները, արվեստագետները, պատմական հայտնի անձնավորությունները, քաղաքական ու հասարակական գործիչները, զորավարները և ուրիշներ։

ՀՍՀ-ում իր ծանրակշիռ բաժինն ունի հայագիտությունը։ Անշուշտ, հրատարակության նախապատրաստվող «Սովետական Հայաստան» հատուկ հատորում ավելի մանրամասն կարտացոլվեն մեր հանրապետության նվաճումները, ինչպես նաև հայ ժողովրդի պատմական անցյալը, բայց և այնպես ՀՍՀ 12 հատորներում տպագրվել են շատ նյութեր Հայաստանի ու հայ ժողովրդի վերաբերյալ։ Ցանկացած հարցի մասին կարելի է այստեղ պատասխան գտնել, տեղեկություններ կան հնագույն ժամանակներից մինչև մեր օրերը։

Հանրագիտարանում ըստ արժանվույն որոշակի տեղ է հատկացված սփյուռքահայությանը թե՛ ընդհանուր հոդվածով, թե՛ առանձին երկրների բաժիններով։ Տրվում է հայ սփյուռքի կազմավորման պատկերը, բնութագրվում նրա այժմյան վիճակը, ցուցաբերվում շերտավորված մոտեցում դեպի նրա դասակարգային բաժանումները և գոյություն ունեցող կուսակցությունների ու հոսանքները։ Հատկապես ընդգծվում են մայր հայրենիք-սփյուռք կապերն ու առնչությունները և շեշտվում հայրենադարձության փրկարար նշանակությունը։ Քննադատվում է դաշնակցության անհեռատես ու հայրենադավ գործունեությունը։

Ամբողջացնելով հանրագիտարանի համապարփակ ընդգրկումները, կարելի է ասել, որ ՀՍՀ-ն գիտելիքների ու տեղեկությունների կուտակիչ է։ Այն մարդկանց զինում է համակարգված իմացությամբ, մղում ակտիվ գործունեության։

Հանրագիտարանի նյութերն ուղեկցվում են պատկերազարդումներով, քարտեզներով, դիագրամներով, վիճակագրական աղյուսակներով։ ՀՍՀ 12 հատորներում զետեղված են գունավոր և սև ու սպիտակ ավելի քան 15 հազար նկարներ, մոտ 900 քարտեզներ։ Դրանք դյուրացնում են նյութի մատուցումը և բարձրացնում հանրագիտարանի գեղարվեստական մակարդակը։ Հոդվածները շարադրված են հանրագիտարանային ոճով, գիտամատչելի լեզվով, դիպուկ բնորոշումներով։

Հանրագիտարանը, որպես գիտական հրատարակություն, բարձրարժեք տեղեկատու և գիտելիքների շտեմարան, հենվում է բազմաթիվ գիտնականների ու մասնագետների վրա, որոնք պատվով են կատարում իրենց գիտահայրենասիրական պարտքը։ ՀՍՀ հիմնադիր-գլխավոր խմբագիր, այժմ խմբագրական կոլեգիայի նախագահ ակադեմիկոս Վ. Հ. Համբարձումյանը պարբերաբար հանդես է գալիս հանրագիտարանի էջերում։ ՀՍՀ-ի ստեղծմանն ակտիվորեն են մասնակցում խմբագրական կոլեգիայի, գիտահրատարակչական խորհրդի, գիտաճյուղային խորհուրդների անդամները, ակադեմիկոսներն ու թղթակից-անդամները, պրոֆեսորներն ու դոկտորները, գիտահետազոտական ինստիտուտների աշխատողները, բուհերի դասախոսները, բազմապիսի մասնագետներ։

Հեղինակների, գրախոսների ու կոնսուլտանտների թիվը հասնում է մոտ 8.000 հոգու. փաստորեն հանրապետության ողջ հոգևոր պոտենցիալն ի սպաս է դրվել հանրագիտարանի ստեղծմանը։ Այդ մեծ ու պատվավոր գործին իրենց խոշոր նպաստն են բերում նաև Սովետական մեծ հանրագիտարանի աշխատողները, վաստակաշատ գիտնականներ Մոսկվայից, Լենինգրադից ու եղբայրական հանրապետություններից։ Մեր մասնագետները նույնպես փոխադարձաբար օգնում են կենտրոնական ու հանրապետական հանրագիտարաններին։ ՀՍՀ-ի գլխավոր խմբագրությունը կապված է ոչ միայն Հայաստանի համարյա բոլոր հիմնարկ-ձեռնարկությունների, այլև Սովետական Միության շատ հաստատությունների հետ։ Այդպիսի գործելակերպը, որը սոցիալիստական ինտերնացիոնալիզմի վառ դրսևորումներից է, նպաստում է սովետական ժողովուրդների մշակույթների փոխհարստացմանն ու նրանց բարեկամության ամրապնդմանը։

ՀՍՀ գլխավոր խմբագրությունում մեծ ուշադրություն է դարձվում աշխատանքի գիտական կազմակերպմանը, հրապարակվող նյութերի գիտական ու ոճական մշակմանը։ Անցած երկու տասնամյակում մեզ մոտ ստեղծվել է հանրագիտարանային գործի բարձրորակ մասնագետների փորձված կոլեկտիվ, որն ի վիճակի է, հեղինակային ակտիվի հետ, հրատարակելու բազմապիսի հանրագիտարաններ։ Կոլեկտիվի բարեխիղճ ու որակյալ աշխատանքի շնորհիվ ՀՍՀ-ն վաղուց դարձել է տնտհաշվարկային և գործում է եկամուտներով՝ լիովին ծածկելով աշխատավարձի ֆոնդը, շահույթ բերելով պետությանը և մշտական պարգևավճար՝ աշխատողներին։ Ձեռք բերած հաջողությունների համար ՀՍՀ գլխավոր խմբագրությունը բազմիցս պարգևատրվել է հանրապետական և գերատեսչական փոխանցիկ կարմիր դրոշներով։ ՀՍՀ-ն արժանացել է նաև համամիութենական մրցանակի՝ լավագույն ձևավորման ու պոլիգրաֆիական կատարման համար։

Հանրագիտարանային գործը մշտապես պահանջում է սեփական աշխատանքի նկատմամբ դրսևորել սթափ, քննադատական մոտեցում։ Մեր աշխատանքներում տակավին նկատվում են անբավարար խմբագրման դեպքեր, երբեմն անճշտություններ ու վրիպակներ, անհաջող նկարներ։ Մինչդեռ հանրագիտարանները, որպես գրքերի գիրք, գրքերի չափանիշ, յուրահատուկ կամերտոն, պետք է անսխալ, անթերի լինեն։ Ուստի հարկ է գործել միայն այդ գիտակցու-

# ՆՈՐԻ ՀԱՍՏԱՏՄԱՆ ՊԱՅՔԱՐՈՒՄ

Պ. ԴԵՄԻՐՃՅԱՆ

ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅԱՆ ԱՐՄԱՏԱԿԱՆ վերակառուցման կուրսը, որ նախանշվել է ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թ. ապրիլյան պլենումի և ՍՄԿԿ XXVII համագումարի պատմական որոշումներով, ընդգրկում է մեր կյանքի բոլոր՝ տնտեսական-արտադրականից մինչև հոգևոր-մշակութային բնագավառները: Հանուն մեր կյանքի առավել դեմոկրատացման, հասարակության զարգացման խթանավորման, ճշմարտության և արդարության սկզբունքների ամրապնդման, ընդդեմ բյուրոկրատիզմի, ընչաքաղցության, քաղքենիական հոգեբանության ամեն տեսակի դրսևորումների՝ կուսակցության իսկ կոչով սկսված լայնամասշտաբ շարժումը, առաջին պլան մղելով «մարդկային գործոնի» վճռորոշ դերն ու նշանակությունը վերակառուցման բարդ ու դժվարին ծրագրի իրականացման գործում, բնականաբար, նոր խնդիրներ է առաջադրում նաև գեղարվեստական գրականությանը: Ինչպես նշվեց ՍՄԿԿ XXVII համագումարին Կենտկոմի տված Քաղաքական զեկուցման մեջ, այսօր «Հասարակությունը գրողից սպասում է գեղարվեստական հայտնագործություններ, կյանքի ճշմարտություն, որը միշտ եղել է իսկական արվեստի էությունը: Սակայն ճշմարտությունը վերացական հասկացություն չէ, այն կոնկրետ է: Ճշմարտությունը ժողովրդի մեծագործությունների և հասարակության զարգացման հակասությունների մեջ է, հերոսականության և աշխատանքային առօրյայի, հաղթանակների ու անհաջողությունների մեջ, այսինքն՝ հենց կյանքի, նրա ողջ բազմազանության, դրամատիզմի ու վեհության մեջ: Միայն գաղափարական, գեղարվեստական, ժողովրդական գրականությունն է դաստիարակում ազնիվ, հոգով ուժեղ մարդիկ, որոնք ընդունակ են կրելու իրենց ժամանակի բեռը» (ՍՄԿԿ XXVII համագումարի նյութերը, էջ 126—127):

Պետք է ասել, սակայն, որ այս պահանջը ոչ միշտ է ըմբռնվում ամբողջ խորքով: Գրական մամուլում, զանազան հավաքներում և ասուլիսներում երբեմն-երբեմն նկատվում է սովետական գրականության անցած ուղու ներքին դժվարությունների և այդ ընթացքում ունեցած որոշակի նվաճումների ու ձեռքբերումների անտեսման միտում: Մինչդեռ դա պարզապես անիրավացի է: Գրողները միշտ էլ գտնվել են հասարակական-քաղաքացիական արդարության համար պայքարի առաջին շարքերում, նրանց գրավոր և բանավոր խոսքը, ուղղակի կամ անուղղակի, միշտ էլ ուղղված է եղել հասարակության մեջ ազնիվի, գեղեցիկի, արդարի ու վեհի հաստատմանը: Այլ բան է, թե որքանով, ինչ ուժով և մասշտաբներով է այն կարողացել հնչեցնել իր ձայնը, իր ճշմարտությունը:

Հասարակության առաջընթաց շարժումն անհնար է պատկերացնել իբրև սահուն, անկաշկանդ ընթացք: Հասարակության սոցիալական զարգացման վերաբերյալ մարքս-լենինյան ուսմունքը ելնում է նրա ներքին հակասությունների, դինամիկայի, հնի ու նորի անխուսափելի պայքարի օրինաչափության ըմբռնումից: Եթե քննելու լինենք մեր գրականության անցած վերջին մի քանի տասնամյակ ընդգրկող ուղին, ապա որոշակիորեն կարող ենք հետևել, որ այն գեղարվեստականորեն արտացոլել է հասարակական կյանքի դիալեկտիկան՝ կերպարների, պատկերների ու գրողական տարբեր աշխարհընկալումների միջոցով:

Մեծ Հայրենականի հաղթական ավարտից որոշ ժամանակ անց՝ 50-ական թվականների կեսերին, 60-ականի սկզբներին, մեր հասարակության կյանքում սկիզբ առավ բեկումնային մի շրջան, երբ անցյալի հոգեբանական-բարոյական արժեքներն ու պատկերացումներն այլևս սպառել էին իրենց կենսական զորությունը, իսկ նոր արժեքներն էլ դեռ չէին հաստատել իրենց իրավունքը: Ինչպես միշտ, նման անցումային բարդ ժամանակահատվածներում գրականությունն իր ուշադրությունը սևեռում է անցյալի ու ներկայի, հնի ու նորի սահմանագծում հոգեբանական-կենսական դրամա, երբեմն նույնիսկ ողբերգություն ապրող մարդու կյանքին ու ներաշխարհին՝ հենց այդտեղ պեղելով ու բացահայտելով նաև այն հոգեբանական-բարոյական հատկանիշները, որոնք, ծլարձակելով հասարակական որոշակի պայմանների ու պրոբլեմների մեջ, հետագայում աճելու ու զարգանալու մեծ հնարավորություն ունեն և կարող



են իրենց նպաստը բերել ժամանակակցի կերպարի կազմավորմանը:

50—60-ական թվականներին, մեր երկրում կատարվող տնտեսական-հասարակական խոր վերափոխումների, կառուցողական վիթխարի թափի, ժողովրդական զանգվածների աշխատանքային սխրագործությունների արտացոլման հետ մեկտեղ, գրականության մեջ երբեմն-երբեմն սկսում էին լսվել նաև տագնապներ մարդկային անտարբերության, ընտանեկան կապերի քայքայման, հասարակական հարաբերությունների ճեղքվածքների վերաբերյալ: Աղասի Այվազյանի «Ընտանիքի հայրը» վիպակի հերոսը, օրինակ, տարակուսած հարց է տալիս՝ «Ինչու՞ մարդիկ չեն հասկանում իրար: Ինչու՞ ընտանիքի անդամները չեն հասկանում իրար»: Իսկ նրա «Կիրակոսը» պատմվածքի փոքրիկ հերոսը, որ նոր է սկսում վերլուծական հայացքով նայել մարդկանց կյանքին ու հարաբերություններին, նկատում է, որ մարդիկ «իրար մեջ միշտ տարածություն են թողնում»: Եվ միասնության ու արդարության կարոտ նրա պատանեկան էությունը ընդվզում է այդ երևույթի դեմ՝ «Մարդիկ սխալ են անում, որ իրար լքում են, ասացի ես՝ նկատի ունենալով և տարածությունները մարդկանց միջև, և՛ յուրաքանչյուրի դեմքի կնճիռը»: Մարդկանց փոխըմբռնման, հոգեկան կապերի հաստատման պրոբլեմին էական կարևորություն է տրվում նաև Մուշեղ Գալշոյանի «Բովտուն» վեպում: Հիշենք, օրինակ, Ներսեսի կերպարը: Միշտ միայնակ, շրջապատի կողմից կարծես լքված ու անտեսված և հենց այդ պատճառով էլ լուռ ու մունջ, «ուրքաթախոս» մականունը կրող Ներսոն անճանաչելիորեն կերպարանափոխվում է հոր մահվան օրը՝ մինչև հոգու խորքը զգացվելով իր նկատմամբ մարդկանց ցուցաբերած ուշադրությունից: Ներսոն նույնիսկ լաց է լինում վերաբերմունքի այդպիսի փոփոխությունից, մեղադրում է իրեն, որ վիրավորվել է մարդկանցից. «Եվ Ներսոն մնաց պարտքի տակ: Ինչո՞ւ է վիրավորվել, խույս տվել գրասենյակ ու զրուցատեղից, համագյուղացիները վատ ի՞նչ են արել»: Բայց անցնում է մի որոշ ժամանակ, և մարդիկ կրկին մոռանում են Ներսոյին: Եվ նա, թողնելով իր տունը, ընտանիքն առած՝ հեռանում է գյուղից:

Այդպես, հոգեբանական նուրբ դիտարկումներով գրողներից շատերը իրենց գեղարվեստական երկերում արտացոլել են մարդկանց կղզիացման, հոգեկան անջրպետների առաջացման դեռևս նոր սկզբնավորվող ընթացքը, որն աստիճանաբար պետք է վերաճեր քաղքենիական-սպառողական հոգեբանության գեղարվեստական մերկացման:

Հասկանալի է, որ մարդկային ներքին հատկանիշների ձևախախտումն ուներ իր սոցիալական հիմքերը: Դա նախ և առաջ մեր հասարակության զարգացման հեռանկարային խնդիրներում թույլ տրված սխալների հետևանքով գյուղերի քայքայման և քաղաքների ուռճացման արդյունք էր՝ իր ամենատարբեր հետևանքներով, որոնք իրենց գեղարվեստական արտացոլումն են գտել Ս. Խանզադյանի, Խ. Հրաչյանի, Խ. Գյուլնազարյանի, Վ. Պետրոսյանի, Հր. Մաթևոսյանի, Զ. Խալափյանի և ուրիշ շատ գրողների բազմաթիվ երկերում: Միութենական գրական շարժման երևույթներին համընթաց՝ հայ գրականության մեջ մշակվեց անցյալի ու ներկայի, ապրած և չապրած տարիների, գյուղի ու քաղաքի միջև ներքին հոգեկան բարդ դրամա ապրող հերոսի կերպարը:

Ներկա հոդվածում, սակայն, մեզ հետաքրքրում է, մասնավորապես, հայ գեղարվեստական արձակում ժամանակակից քաղքենու, սպառողական հոգեբանության կրողի կերպարի արտացոլման հետագա ընթացքը:

Նկատենք, որ տարիների հետ գրողներն ավելի ու ավելի սրությամբ, առավել մեծ պատասխանատվությամբ են անդրադառնում այդ կարևոր խնդրին: Հոգեբանական առանձին դիտարկումներից անցում է կատարվում դեպի քաղքենու որոշակի կերպարի ստեղծումը, նրա մերկացումն ու դատապարտումը: Դա կատարվում է հասարակության բուն իդեալները կրողի և նույն այդ իդեալների անունից նրա նյութական ու հոգևոր կողոպուտով զբաղվողների խիստ հակադրության միջոցով: Ու թեև գեղարվեստական-գեղագիտական այդ լուրջ խնդիրը այս կամ այն չափով իր արտացոլումն է գտել ժամանակակից մեր արձակի շատ գործերում, ստեղծվել են նաև երկեր, որոնց մեջ այն հատկապես սուր շեշտադրում է ստացել:

Կամարի Տոնոյանի «Նիգուլը» պատմվածքում հակադրության տարբեր կողմերում պատկերված են ծերունի Նիգուլը՝ այդ խոշորակազմ, հաճելի արտաքինով ծեր մարդը, որն իր ամբողջ կյանքում մտածել է միայն հարստանալու, ունեցվածք դիզելու մասին, և Արմանն ու Սառան, որոնց գլխավոր կենսական սկզբունքը հոգու հարստությունն է, մարդկայինի ու գեղեցիկի պաշտամունքը: Եվ պատահական չէ, որ նրանք պարզապես փախչում են Նիգուլի խոշոր, բայց դատարկ տնից, ուրեմն և՝ նրա նյութապաշտությունից, սառն ու անկենդան աշխարհից: Արմանի կերպարին հոգեհարազատ է Կ. Տոնոյանի մեկ այլ՝ «Ճանապարհի մարդը» պատմվածքի հերոս Ալոշը: Նա ոչ մի ունեցվածք չունի, բացի իր ուսապարկից: Անընդհատ ճամփորդում է, անցնում քաղաքից քաղաք, փնտրում-գտնում դժվարին տեղամասեր, ազնվորեն ու բարեխղճորեն կատարում է իր աշխատանքը և կրկին շարունակում ճանապարհը: Արմանը գրող է, Ալոշը՝ բանվոր: Սակայն նույնն է նրանց հոգեկերտվածքը՝ արհամարհանքը նյութապաշտության, քաղքենիության հանդեպ և ազնվության, մարդկայնության, հոգեկան

տիպային դպրոցն ու մանկապարտեզը ընդունում են հարյուրավոր երեխաների, հիմնվում է բուժկետ։ Ավելորդ է ասել, որ այսօրվա գյուղացու բնակարանային ու կենցաղային պայմանները գրեթե չեն տարբերվում քաղաքաբնակների ունեցած հնարավորություններից։ Այս ամենի շնորհիվ գյուղը դրսևորում է աճի որոշակի միտում. վկան՝ նորաստեղծ թաղամասը, որը հիմնականում բնակեցված է երիտասարդներով, վկան՝ տնամերձ հողամասերի պարբերաբար հատկացումները և տարբեր ուսումնական հաստատություններից հայրենի ուտան վերադարձող մասնագետները։

Սակայն, որքան էլ նվաճումներն անվիճելի են և ոգևորող, սոցիալական զարգացման կարգվածքով տակավին շատ են անհապաղ լուծում պահանջող պրոբլեմները։ Դրանք վերաբերում են խմելու ջրի հին ցանցի վերակառուցմանը, տիպային կենցաղի տան կառուցմանը, գյուղի ոռոգման ջրի ապահովմանը, միջգյուղային ճանապարհների բարեկարգմանը։ Այսուհանդերձ, թվարկված միանգամայն լուծելի խնդիրների շարքում պետտնտեսության դիրեկտորը որպես ամենացավոտ, նշում է աշխատուժի ծերացումը՝ անբնական և անհեռանկար համարելով այն իրողությունը, որ աշխատողների միջին տարիքը 45 է։ Վաղվա օրվա մտահոգությամբ սա իսկապես կարող է տագնապ հարուցել։ Ուրեմն, ինչպե՞ս վարվել, ի՞նչ միջոցներով նպաստել, որ տոհմիկ գյուղացու որդիները սերնդեսերունդ կապվեն իրենց կերակրողի՝ հողի հետ։ Այս հարցում տնտեսության ղեկավարները որոշ փորձ են ձեռք բերել, բացատրական աշխատանքի և մանավանդ կապալի ներդրման շնորհիվ գրեթե բուժվել է արտագնացության «տարափոխիկ հիվանդությունը», որը սպունգի նման կլանում էր գյուղի աշխատունակ տղամարդկանց՝ ասպարեզը թողնելով կանանց և ծերերին։ Սակայն իրավիճակը դեռևս լիովին շտկված չէ, քանի որ ջահելները խուսափում են ներգրավվել գյուղատնտեսական արտադրության մեջ՝ վկայակոչելով դրա կազմակերպման գործում տեղ գտած թերությունները և սեզոնայնությունը։ Վարդան Փաշիկյանը չի մեղադրում նրանց, այլ փորձում է օբյեկտիվ պատճառներ որոնել.

— Թերևս պետք է հիմնել որևէ արտադրական մասնաճյուղ, որը երիտասարդներին կկապի գյուղի հետ։ Միայն թե այդպիսի ձեռնարկությունը կամ պետք է խստորեն հաշվի նստի գյուղատնտեսական աշխատանքների սեզոնայնության հետ, իր պլանները համարեցնի դրան, կամ էլ գործի պետտնտեսության տնօրինության ներքո։ Չէ՞ որ գաղտնիք չէ, որ գյուղատնտեսական լարված եռուն աշխատանքները տևում են վեց-յոթ ամիս, հիմնականում՝ մայիսից հոկտեմբեր։

Այսպես խորհրդածում, պրպտում է արտադրության հրամանատարը, ապա խորին հավատով ու համոզմունքով խոսում անելիքների, ծրագրերի մասին, որոնք իրենց մասշտաբներով անծանոթին կարող են թվալ անհավանական։ Բայց ես, որ արդեն աչքովս եմ տեսել նրա թողած լուսավոր հետքերը փոքրիկ ու գողտրիկ Բաղանիս գյուղում, վստահ եմ, այդ համարձակ մտահղացումները ևս վաղը, մյուս օրը կյանքի կկոչվեն։ Վստահ եմ, քանի որ «Պատվո Նշան»-ի ասպետ Վարդան Փաշիկյանը երկրի այն երիտասարդ տերերից է, ովքեր հիանալի գիտեն հողի լեզուն և ազնիվ նվիրումով ճանապարհ են հարթել դեպի աշխատավոր մարդկանց սրտերը։

**Լ. ԱՆԱՆՅԱՆ**

---

# ՑԱՆԿ

## 1987 թվականին «Լենինյան ուղիով» ամսագրում տպագրված հոդվածների և նյութերի

## ԱՌԱՋՆՈՐԴՈՂՆԵՐ ԵՎ ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ՀՈԴՎԱԾՆԵՐ



## Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԾՆՆԴՅԱՆ 117-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ



## ՍՄԿԿ XXVII ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ՈՐՈՇՈՒՄՆԵՐԸ ԳՈՐԾՈՂՈՒԹՅԱՆ ՄԵՋ



## ԴԵՊԻ ՄԵԾ ՀՈԿՏԵՄԲԵՐԻ 70-ԱՄՅԱԿԸ







## ՀՈԿՏԵՄԲԵՐԸ ՄԱՐԴԿԱՆՑ ՃԱԿԱՏԱԳՐՈՒՄ



## ԱՐԱԳԱՑՄԱՆ ՍՏՐԱՏԵԳԻԱ

---


*Հանձնված է շարվածքի՝ 19.11.87 թ.: Ստորագրված է տպագրության 21.12.87 թ.: ՎՖ 08576: Ֆորմատ՝ 70×108 1/16: Տպագրություն՝ բարձր, 8,4 պայմանական տպ. մամ., 9,4 հրատ. մամ.: Տպաքանակը՝ 18032: Պատվեր՝ 2254:*

***ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Երևան—23, Օրջոնիկիձեի պողոտա № 2:***